ԼԵՒՈՆ ՍԱՐԳՍԵԱՆ

# ՄԻ ՔԱՆԻ ՕՐ

# ԱՐՑԱԽՈՒՄ ԵՒ ՍԻՒՆԻՔՈՒՄ

(ՀԱՅ ՏՈՒՐԻՍՏԻ ՅԻՇՈՂՈՒԹԻՒՆՆԵՐԻՑ)

*Արտատպուած «Մուրճ»ից:*



ԹԻՖԼԻԶ
*Արագատիպ Ա. Քութաթելաձէի, Նիկ. 21.*
Скоропечатня А. Кутателадзе, Ник. 21.
1905

# ՄԻ ՔԱՆԻ ՕՐ

# ԱՐՑԱԽՈՒՄ ԵՒ ՍԻՒՆԻՔՈՒՄ

## Ա.

Յունիսի վերջին օրերից մէկն էր, երբ ես Թիֆլիսի երկաթուղու կայարանում, վագոնի մէջ նստած, անհամբեր սպասում էի գնացքի մեկնման։

Վագոնի մէջ այնքան տօթ էր, որ մարդուց նստած տեղը քրտինքը ծլծլում էր։

Նոյն վագոնում էին ի միջի այլոց տեղաւորուել և մի ռուս ու մի վրացի զինուորականներ, որոնք Հեռաւոր Արևելք էին ուղևորւում։ Առաջինը կանգնած էր պատուհանի մօտ և աշխատում էր հանգստացնել իր վզովն ընկած ամուսնուն, որ անկարող էր զսպել իր հեկեկանքը, իսկ երկրորդին ճանապարհ էր գցում նրա մօտ 20 տարեկան սիրուն սևազգեստ աղջիկը, որի աչքերը կարմրել էին և ուռել արտասու-

քից. Նա այժմ աշխատում էր պահել իր լացը։

Կողքիս նստած էին երկու ռուս, երեւի երկաթուղային մեքենավարներ, որոնք գընում էին մօտիկ կայարաններից մէկը։ Դրանք հիմնաւորապէս երկրպագել էին Բաքոսին և իրանց հետ վագոն էին մտցրել մի տկճոր լիքը գինով։ Տկճորը դրել էին նստարանի տակ և յաճախ քնքշութեամբ դիմում էին նրան «հօրթուկ» փաղաքշական խօսքով։

Գնացքը շարժուեց։ Բոլորը տեղաւորուեցին. ճանապարհ գցողները այլևս աւելորդ տեղ չէին բռնում։ Պատուհաններից քամի փչեց, դիւրացաւ մեր շնչառութիւնը։

Վրացի զինուորականը նստել էր իմ դիմաց։ Բաքոսի երկրպագուներից մէկը հանեց նստարանի տակից «հօրթուկին», ուղղելով նրան միքանի փաղաքշական աճականներ, լցրեց էմալէ թասը և դիմելով վրացի զինուորականին ասաց.

—Թոյլ տուէք, ձերդ պայծառափայլութիւն, խմել ձեր կենացը և ցանկալ ձեզ կատարեալ աջողութիւն պատերազմում։ Տայ Աստուած, որ դուք վերադառնաք կռուից ողջ ու առողջ և ձեր կուրծքը զարդարուած

լինի մի շարք շքանշաններով։ Խմում եմ մեր արծիւների—ռուս հերոսների կենացը. թող դրանք չարդ ու փշուր անեն մեր յանդուգն թշնամուն... Ձերդ պայծառափայլութիւն, ինձ էլ կը վերցնէք ձեզ հետ, ա՞, ես նրանց ցոյց կը տամ...

Իշխանը շնորհակալութիւն էր անում. նա կասկած չունէր որ հզօր Ռուսաստանը կը յաղթի իր թզուկ ոսոխին։ Ինքը եղել էր ռուս-տաճկական պատերազմում և գիտէր ռուս զինուորի անվեհերութիւնը. բացի այդ, նա համոզուած էր որ գեներալ Կուրոպատկինի նման ռազմագէտ հազիւ գտնուի աշխարհում...

—Կեցցէք, կեցցէք, բղաւեցին մեքենավարները, դէ՛ խմեցէք, ձերդ պայծառափայլութիւն. դուք հերոս էք, մեր բոլոր զինուորականները հերոսներ են, կեցցեն մեր արծիւները...

Երբ կայարաններից մէկում մեր այդ հարևանները անհետացան իրանց «հորթուկի» հետ, իշխանը իրան շատ թեթևացած զգաց։

Ազատուած տեղը գրաւեց մի վրացի երիտասարդ քահանայ։ Վրացի հոգևորականը և զինուորականը իսկոյն ծանօթա-

ցան և գրոյցի բռնուեցին։ Բնականաբար խօսակցութեան առարկան պատերազմն էր։ Երևում էր որ քահանան հետևում է մամուլում լոյս տեսնող բոլոր տեղեկութիւններին. մինչդեռ իշխանը արհամարհանքով էր վերաբերւում «գրչակների» և «թղթակիցների» «յիմար», «սուտումուտ» հաղորդումներին. Նա իրան մասնագէտ էր համարում և՝ այն ինչ պրոֆաններին թւում էր յաղթութիւն—նա համարում էր պարտութիւն, և՝ ընդհակառակը... Զուր էր տէրտէրը փորձում առարկութիւններ անել. իշխանը հեղինակաւոր կերպով շարունակում էր զարգացնել իր ռազմական ծրագիրները...

Կէս գիշեր էր և դեռ քնի մէջ ես լսում էի դրանց տաք վէճը և՝ «ճապոնացի», «Պորտ-Արտուր», «ռուսաց էսկադրա», «գեներալ Կուրոպատկին» խօսքերը։

Լուսաբացին իջայ Եւլախ կայարանում. մեր իշխանը ամուր փաթաթուել էր եափնջում և խռմփում էր, իսկ քահանան չկար։

*
* *

Եւլախը գտնւում է Քուռ գետի աջ (հարաւային) ափին. այդ կայարանից պոստային ճանապարհ է գնում դէպի հիւսիս՝ Ձէքիի մայրաքաղաք Նուխին և դէպի հարաւ՝ Ղարաբաղի մայրաքաղաք Շուշին։

Ես ուզում էի մի ուղևորութիւն կատարել մեր հին Արցախ և Սիւնիք նահանգներում, որոնք միասին այժմ բռնում են Գանձակ նահանգի մեծ մասը։

Եւլախից Շուշի գնում են նաև մասնաւոր կառքեր։ Ես վերցրի դեմոկրատիական հանրակառքում մի տեղ. ինձ տուին մի տոմսակ, որի վրայ նշանակուած էր գինը՝ 5 րուբլի. բանից դուրս եկաւ որ այդ գինը գոյութիւն ունի միայն նրանց համար, որոնք սովորութիւն չունին սակարկութիւն անելու. աւելի փորձուած ուղեկիցներս վճարել էին 2—3 րուբլի։

Հանրակառքը լցուել էին հայ երեխաներ, կանայք և միքանի երիտասարդներ. մեզ հետ էր և մի հրէայ օրիորդ—ատամնաբոյժ, որ ամառը գնում էր Շուշի՝ իր արհեստը գործադրելու։ Առաջի անգամը չէր որ Իսրայէլի այդ դուստրը մին-մենակ ճանապարհորդում էր՝ սեփական աշխատանքով իր գոյութիւնը պահպանելու հա-

մար․ նա միքանի անգամ գնացել էր նոյն նպատակով Թաւրիզ։

Իր պրակտիկի համար նա հասկանում էր հայերէն և Թուրքերէն միքանի խօսք միայն, բայց յուսահատուել չգիտէր այդ տոկուն և ընդունակ ցեղի զաւակը։

Հանրակառքը արդէն լի էր ճամբորդներով, երբ մի կայարան անց մի փափախաւոր Թուրք էլ ուզեց նստել կառապանի մօտ։ Մեր ուղեկից շուշեցի պարոններից մէկը այնպիսի աղմուկ հանեց, այնպէս ուժգին սկսեց կռուել կառապանի և կոնդուկտորի հետ որ խեղճ Թուրքը պիտի մնար ճանապարհին։ Նեղ դրութիւնը հնարագէտ դարձրեց նրան․ մի ակնթարթում նա վեր մագլցեց և նստեց հանրակառքի կտրին։ Այդ խորամանկութիւնը բոլորին ծիծաղացրեց, և թողին նրան այնտեղ՝ տապակուելու արևի այրող ճառագայթների տակ։

* * *

Մեր ճանապարհը ընկած էր յատակի նման հարթ դաշտավայրով․ հին Հայաստանի Ուտի նահանգով էինք առաջ ընթանում։ Մեզնից դէպի արևմուտք և հարաւ հեռ-

տում կապտին էին տալիս Արցախի լեռները, որոնք ականատես էին դեռ ևս երկու դար առաջ Հայոց մելիքների ազատագրական ջանքերին...

Հին Ուտին շատ յաճախ անցել է հարևան աղուանների ձեռքը, որոնց թագաւորութեան իսկական սահմանը եղել է Քուռ գետը։ Աղուանից աշխարհը բռնում էր այժմեան Ճէքի-Շիրվանը։ Սակայն ի զուր չէ ասած «սահման քաջաց՝ զէնն իւրեանց»․ աղուանները միշտ երբ իրանց ուժեղ են զգացել՝ տիրել են նաև Ուտի նահանգին, որ իր աշխարհագրական դիրքով Աղուանից աշխարհի շարունակութիւնն է։ Այժմ այդ աղուանների հետքն էլ չկայ Կովկասում, իսկ ուտիացիներից մնացել են երկու-երեք գիւղեր Նուխիի կողմերում։ Իրաւ է, պատմական Ուտի նահանգի մայրաքաղաք և երբեմն Աղուանից կաթողիկոսութեան աթոռանիստ կենտրոն Պարտաւը այժմ էլ գոյութիւն ունի, սակայն նա ներկայացնում է այժմ մի կոյտ ողորմելի խրճիթների, իրանց թուրք բնակիչներով։ Այդքա՜ն փոփոխական է ազգերի ճակատագիրը...

Դէպի հարաւ ընթանալով դժուարութեամբ անցնում էք Թարթար, Խաչէն,

Գարգար գետերով․ սրանք սկիզբ են առնում Արցախի բարձրաբերձ, անտառազարդ և զով լեռներում, ապա կատաղի հոսանքով իջնում են Առանի դաշտավայրը և ամառուայ տաքից լռում ու չորանում այդտեղ, մերկացնելով այլանդակ քարերով ծածկուած իրանց հունը։ Լեռնոտ Հայաստանի այդ գետերը յիշեցնում են ձիւնապատ սարերում ազատ օդի մէջ մեծացած երէները, որոնք մեռնում են, երբ նրանց վար են իջեցնում խորշակահար տափաստանները…

*
* *

Միայն Խաչէն գետը անցնելուց յետոյ նկատելի է դառնում ձեր վերելքը։ Եւ երբ մտնում էք Գարգար գետի հովիտը և անցնում նրա մուտքը երբեմն կապող Ասկերան բերդի աւերակների միջով — շրջապատող բնութիւնը ստանում է լեռնային բնաւորութիւն։

Գետի միւս ափին տեղ-տեղ երևում են ռուս գաղթականների հիմնած նոր գիւղերը, որոնք տեղական լանդշաֆտի մէջ տարբեր կուլտուրայի և կենցաղի տեսարաններ են մտցնում։

Խանքենդի կայարանից սկսած օձապտույտ ճանապարհը արդէն զառիվեր գնում է Շուշի։ Դեռ չհասած այդ քաղաքը դուք ճանապարհին առիթ ունէք տեսնելու մեր տնտեսական կեանքում տոկունութիւն և ձեռնարկող ոգի ցոյց տուող շուշեցու նոր գործեր. գարեջրի գործարան, կաթնատընտեսական ֆերմա...

Արդէն մթնել էր։

Քաղաքը գտնւում է ծովի մակերևոյթից 5020 ոտնաչափ բարձր, սարի գագաթին։ Վերելքը բնականաբար դանդաղ էր կատարւում։ Բոլորս սաստիկ ջարդուել էինք ու յոգնել։ Երեխաները ամենաբնական դիրքերում անգամ քնել էին մեռելների նման։ Կամքը թուլացել էր և մեծերի մօտ. մարդ անզօր է այդ յոգնածութեան մէջ իշխել իր ջղերի և մկանների վրայ. աչքի կոպերը ծանրանում են և իրանք իրանք խփւում, չնայած ձեր բոլոր հակառակութեան. գլուխը թուլացած շլինքի վրայ սկսում է ամեն կողմ օրօրուել, ինչպէս հասնացած հասկը քամուց։ Երբեմն ննջողի գլուխը ինքն իրան այնպիսի թափով յետ է ընկնում մէջքի վրայ, որ թւում է թէ վիզը պէտք է կոտրուի. մարդ սթափւում է, կծում է շըր-

թունքները որ ցաւից չքնի, սակայն ի զուր. փաստակաբեկ օրգանիզմը ընկճուած է, կորցրել է իր կամքը և անձնատուր ե-ղել քնին։

Յանկարծ այնպէս ուժով սկսեց մեր կառքը վեր վար թռչկոտել, աջ ու ձախ թեքուել, որ կարծես սաստիկ ալեկոծու-թեան բռնուած նաւակ լինէր։ Պէտք էր ձեռքերով ամուր բռնել նստարանի կողքե-րից—կառքից դուրս չը նետուելու համար։ Մենք մուտք էինք գործել Ղարաբաղի մայ-րաքաղաքը, և նրա խորդ ու բորդ, քարե-րով ու փոսերով ծածկուած գլխաւոր փո-ղոցը թափահարում էր մեզ, այդ ձևով «բա-րի գալուստ» յայտնելով։

Կարելի է առանց չափազանցութեան ասել որ Շուշուայ հիմնադիր Փանահ-Խանի օրից մինչև այժմ միայն մի փոփոխութիւն են կրել այդ «սալայատակները», այն էլ երբ Աղա-Մահմէդ-խանը աւերել է քաղաքի հետ և նրա փողոցները... Քաղաքացիները վերաշինելով իրանց սեփական տները, հա-սարակութեան սեփականութիւն — փողոց-ները թողել են աւերուած վիճակի մէջ։ Եւ դեռ երկար կը մնան այդպէս, որովհե-տև Ղարաբաղի «դուման» սպասում է որ

Եւրոպայում սալայատակելու աւելի կատարելագործուած և էժան միջոցներ գտնեն… մինչև արժէ քաղաքն էլ ու մուտք անող կառքերի համար ծախքեր անել…

*
* *

«Բարի գալուստի» ալեկոծութիւնից աւելի ցնցող էր Շուշուայ «բարի ճանապարհը»։ Ես և իմ ուղեկիցը վերցրել էինք պոստի կառք, լծած Ղարաբաղի չորս ոչ հրաշակաւոր նժոյգներ։

Կառքը պէտք է բարձրանար Շուշուայ առաջնակարգ փողոցով և դուրս գար Կորիսի ճանապարհը։ Մի քանի քայլ արինք թէ չէ, պոստատան առաջ կառքը կանգ առաւ․ նրա առաջի անիւները քարերից մերկացած փողոցի փոսերի մէջ էին ընկել, ձիերը չէին կարողանում դուրս քաշել կառքը քարերի և փոսերի այդ խառնիխուռն աւերակներից։

Մենք դուրս եկանք կառքից․ իջաւ և կառապանը, որ յոգնել էր խեղճ անասուններին մտրակելուց։ Կառապանին օգնութեան հասաւ մի իշապան իր դաւազանով․ հարայհրոցը, ծեծը անկարող էին օգնել

հասարակութեան անհոգութիւնից առաջ եկած չարիքին։ Մեր ողբալի դրութիւնը այնքան սովորական մի բան էր թւում բուն շուշեցիներին, որ կողքի կոկիկ, քարաշէն տներից միայն ժպտում էին։ Ստիպուած էինք մի քանի արհեստաւորներ հրաւիրել, որ մեր կառքի անիւներից բարձրացնեն։ Եւ այդպէս հարայհրոյից, մտրակի և գաւազանի հարուածներից անհաբեկուած ձիերը հազիւհազ կարողացան ղատարկ կառքը դուրս բերել այդ երանելի քաղաքից...

Եւլախից մինչև Շուշի ամբողջ 104 վերստ տարածութիւն անցնելով կառքը, ձիերը, ճանապարհորդները ջարդուփշուր լինելու այնքան վտանգ չեն կրում, ինչքան այդ քաղաքի գլխաւոր փողոցով միքանի քայլ անելու ժամանակ։

Մենք ստիպուած էինք ամբողջ զառիվերը ոտքով բարձրանալ։ Ազատուելով քար ու փոսերից, քաղաքի դարբասի մօտ կառապանը կանգնեցրեց հալից ընկած ձիերին։ Մինչ մենք նստած կառքում սպասում էինք որ հանգստանան ձիերը, միքանի քայլ հեռու մեր առաջ ներկայանում էր կեանքի մի բնորոշ պատկեր. շուշեցի միքանի մանր առևտրականներ կանգնեցրել

էին մի գիւղացու, որ ջորու վրայ բարձած ճտերով լի կողովներ՝ քաղաք էր գնում։ Վաճառականները պաշարել էին գիւղացուն. մէկը բռնել էր ջորու սանձից, միւսը կըռ-ները դրել էր կողովների վրայ, որոնց մէջ ճվճվում էին ճտերը, իսկ երկու հոգի բըռ-նել էին գիւղացու թևերից ու օձիքից և «ման օլըմ, տուր, ման օլում, տուր» աղեր-սանքով պոկ չէին գալիս։ Գիւղացին չէր համոզւում «անաստուած էժան գնով» զի-ջել իր ապրանքը։

—Դէ, բաց թողէք, ձեռք քաշէք, չեմ ծախում, ասացի։ Թողէք ասում եմ...

Ո՜վ էր լսողը, տզրուկների պէս կպել էին և պոկ չէին գալիս...

Կառքը շարժուեց տեղից, հեռուից ես յետ նայեցի. դեռ շարունակւում էր բռնի սակարկութիւնը...

Բաւականին նեղ և անփոյթ շինած պոստային ճանապարհն ընկած է Գարգար գետի մի վտակի հոսանքով, ձորի արևմըտեան լանջի վրայ։ Կանաչապատ սարերի բուսականութիւնը աւելի ճոխ է դառնում երբ մօտենում էք «Թթու-Ջուր» կոչուած տեղին, որ Շուշուց դէպի հարաւ-արևմուտք 18 վերստ հեռաւորութեան վրայ է գտըն-

ռում։ Թթու-Ջուրը ղարաբաղցիների հիսլովոդսկն է․ Նրանք սիրում են գործածել այն հանքային ջուրը, որ բղխում է այդ տեղում։ Արցախի այդ «Նարզանը» շշերով ծախում են ոչ միայն Շուշի, այլ և Բագու, Գանձակ։

Թթու-Ջրում ապրելու համար բնակարաններ չկան․ եթէ յարմարութիւններ ստեղծուէին, նա կը դառնար զով և գեղեցիկ ամարանոցավայր։

Պոստային կայարանի դիմացի սարը տեսնելով՝ կարելի է հասկանալ թէ ինչու ռուսները Լըսօգորսկ (ճաղատ սար) են անուանել Թթու-Ջուրը․ դիմացի մի գագաթ մերկ է և այդ «ճաղատութեան» շուրջ ծառերը կազմում են խիտ անտառ, որ առհասարակ ծածկում է բոլոր լեռնային լանջերը և ձորերը։ Նմանութիւնը ճաղատ գլխի շուրջ բուսած մազերի հետ բաւական մօտ է, թէև ոչ բանաստեղծական… մանաւանդ երբ նկատում էք այդ անտառներում արածող հօտեր ու նախիրներ…

Բ.

Հայաստանի մակերևոյթը ծածկուած է անթիւ լեռնագօտիներով ու ձորերով։ Քար ու հողից կազմուած այդ կնճիռների լաբիւրինթոսում դժուար է որոշ ուղղութիւն և կանոնաւորութիւն գտնել, եթէ չը ղեկավարուել գետերի ընթացքով։ Արցախն ու Սիւնիքն էլ պատած են խիտ և խճճուած կնճիռներով, որոնցից ամենահսկայականը ընկած է՝ Կուր և Արաքս գետերի միջև, սկիզբն առնելով Սևանայ լճի հարաւ-արևելեան անկիւնից։ Արցախ-Սիւնիքեան այդ գալարուն և հսկայ լեռնագօտու ձիւնապատ գագաթների ծերպերում և խուլ ծմակներում սկիզբ են առնում մի կողմից Կուր գետի մեզ ծանօթ բազուկները—Թարթառ, Խաչէն և Գարգառ—և միւս կողմից՝ Արաքսի ձախակողմեան բազուկներից Հաքարին և Որոտնը։

Այդ լեռնագօտու հիւսիսային լանջի վրայ է մեր տեսած Թթու-Ջուրը։

Դարիվեր ճանապարհը իսկոյն հասցնում է մեզ կայարանից լեռնագօտու կոհակաւոր ողնաշարին։ Մի տնկած սիւն

իր ցուցանակով մեզ իմացնում է որ դուրս ենք գալիս Շուշու գաւառից և մտնում Զանգեզուրի սահմանները։

Ճանապարհից աջ և ձախ երևում են լեռնագօտու ամենամերձաւոր գագաթները՝ Սարըբաբան և Սաղսաղանը, որոնք պահապանների նման հսկում են Արցախից Սիւնիք տանող ուղին։ Չնայած որ յուլիս ամիսն է, այդ գագաթների խորշերում դեռ սպիտակին են տալիս ձիւնի շերտեր։ Ճանապարհի այդ ամենաբարձր կէտից փռւում են մեր առաջ Սիւնեաց աշխարհի մերձաւոր ձորերն ու լեռները, ներկայացնելով կանաչ կոհակների մի ամբողջ ծով։ Անտառների կանաչ սաղարթը հեռուից սևին է տալիս. զարմանալի չէ որ այդ երկիրն խուժած թաթարական ցեղերը տուին նրան Ղարաբաղ (սև բաղ) անունը։

Սակայն ինչ հիմունքով Արցախի և Սիւնիքի սահման համարել այդ լեռնագօտին և ոչ նրանից քսան վերստ հարաւարևմուտք գտնուող Հաքարի գետը։ Ահա թէ ինչու։— Եթէ ի նկատի առնենք որ հնում շինուած ճանապարհներ չկային, պէտք է չափազանց դժուարանց լինէր այդ լեռնագօտին. մինչդեռ յայտնի է որ հայը հնում գիտէր հըս-

կայական և ամուր կամուրջներ շինել,— մի գործ որ նրա աչքում եկեղեցի կառուցանելու չափ հոգու վարձք էր. այսօր էլ դուք ժողովրդի բերնից կը լսէք «հենց իմացիր եկեղեցի կամ կամուրջ ես շինում» խօսքերը, երբ նա մի բան թախանձանքով խնդրում է ձեզնից։ Բացի այդ, լեռնագօտին աւելի է կլիմայական տարբերութիւն մտցնում իր հակառակ լանջերում, քան գետը իր երկու ափերում։ Հետևաբար, թող մեր հնագէտները այնքան էլ չվրդովուեն, եթէ բռնազբօսիկ տրոհում ենք մտցնում Արցախի և Սիւնիքի մէջ. չմոռանանք որ ժողովուրդն էլ այդ կէտում մեզ հետ համամիտ է. «սարի էն դոլը» արցախեցու բերնում նշանակում է Զանգեզուրը…

*
* *

Լեռնագօտու ողնից զառիվայր օձապտոյտ ճանապարհը ձգւում է մի խոր ձորի հիւսիսային լանջով։ Ձորի յատակում հոսում է Հաքարի գետի վտակներից մէկը։ Այն ամբողջ կանաչ տարածութիւնը, որ փռուած է այժմ մեր առաջ՝ Ղարաղշլաղ հայկական մեծ գիւղի հողերն են։ Վարում

են, ցանում, հնձում հայ ժրաջան աշխատողները և առիւծի բաժին տալիս իրանց վաստակից դատարկապորտ բէգերին. Թաթար նուաճողների շառաւիղներից են դրանք և այժմ օրէնքով շարունակում են տիրել մի ժամանակ բռնի ուժով խլած վայրերին։ Բէգական տիտղոսներով մահմէդական բռնակալների նոքարները այժմ «ազնուական» դասակարգ են կազմել և օգտուում են այն հանգամանքից, որ Անդրկովկասում դեռ չի իրագործւում գիւղացիական հողաբաժինների յետգնման օրէնքը։ Բայց արտօնեալ դրութիւնը չի արգելում որ ընտանեկան բաժանումը և բէգական ծուլութիւնը յաճախ տնտեսապէս քայքայեն այդ «ազնուականներին» և դրանցից շատերին դարձնեն սովորական Թուրք «փահլաններ»։ Կաւրիքի երկաթէ օրէնքը ստիպում է տգէտ բէգերից շատերին ապրուստ հայթհայթելու համար բրիչ ու բահ բռնել այն ձեռներում, որ ըստերևոյթին ստեղծուած էին որսորդական բաղէներ պահելու...

Գուցէ մի այդպիսի բէգ էր այն «փահլան», որ մեր կառքը մօտենալիս հաւաքեց իր բահն ու բրիչը ճանապարհից, ուր նա

քանում էր, և, մի կողմ քաշուելով, դի-
մեց մեզ.

—Աղա, նեմ թազա խաբար։—Նա նոր
տեղեկութիւն էր հարցնում ռուս-ճապոնա-
կան պատերազմի մասին...

***

Մի քանի վերստ անց, մի ղուքանի առջև
մարդկանց մի խումբ էր երևում. հայ և թուրք
գիւղացիներ էին, շրջապատուած սպառա-
զէն ռուս զինուորներով։ Այդ կալանաւոր-
ները զոյգ-զոյգ շղթայուած էին ձեռներից,
որպէսզի չփախչեն։ Բանից դուրս եկաւ որ
անպասպորտների մի «էտապ» էր այդ, ուղ-
ղակի Բագուից։

Մերձակայ գիւղական մի քանի խրճ-
ճիթներից դուրս էին թափուել հայ կա-
նայք իրանց բնորոշ հագուստներով և սա-
րսափանքից կարեկցութեամբ նայում էին ճա-
նապարհով քայլող այդ կալանաւորներին,
որոնք սաստիկ քաշւում էին, կարծես ու-
զում լինէին մի կերպ հասկացնել՝ թէ ի-
րանք յանցաւորներ, չարագործներ չեն...

—Ի՞նչ են արել այդ խեղճերը,—հարց-
րեց մի պառաւ մեր կառապանից։

—Առանց պաշպորտ քնեացալ ըն Բագու, պոլիցան փռնալ ա եա ա ըղարկում,— եղաւ պատասխանը։

Առաջի անգամից անհասկանալի էր թւում գիւղացիների այդչափ անփութութիւնը. չէ որ պասպորտը տրւում է ձրի, էլ ինչու չվերցնել տանուտէրից և այնպէս գնալ քաղաք աշխատանքի։ Բայց… բանը հէնց այդ «բայցի» մէջ է. այն գիւղացին, որի վրայ տուրքի ապառիկներ կան՝ չի ստանում անցաթուղթ։ Եւ ահա ստեղծւում է մի անել դրութիւն. անցաթուղթ ստանալու համար նա պէտք է վճարի իր վրայ մնացած հարկերը. իսկ վճարելու համար պէտք է պանդխտի. այդ էլ առանց անցաթղթի չի թոյլ տրւում։ Եւ միակ ելքը մնում է՝ քաղաք գնալ առանց անցաթղթի, այն յուսով որ աննկատելի կը մնայ այնտեղ և, մի քիչ դրամ վաստակելով, յետ կը գայ և իր պարտքերը կը վճարէ։ Յոյսը մեծ մասամբ ի դերև է ելնում, և… «էտապով» յետ են ուղարկւում իրանց ծննդավայրը ոտքով, շղթայակապ…

*
* *

Ահա և Հաքարին իր վճիտ, փրփրադէզ ալիքներով։ Մենք անցնում ենք նրա ամենածանծաղ հունով, բայց և այնպէս ջուրը քիչ է մնում Թափուի կառքի մէջ։ Գետի լայն հովտից ճանապարհը սկսում է դարիվեր բարձրանալ, ոլոր-մոլոր անցնելով Թխենի և կեռասենի պուրակների կողքով։ Մենք պէտք է կտրենք մի ամբողջ լեռնադաշտ, որ ընկած է Հաքարիի և նրա աջ Բազուկ՝ Զաբըղ գետի միջև։

Անտառապատ լանջերի փոխարէն մեզ շրջապատում են վարելահողեր, պտղատու ծառերի պուրակներ։

Միքանի ժամ անց իջնում ենք և Զաբըղի հովիտը, անցնում նրա փռուած, բաժան-բաժան եղած ջրերով, առանց կամուրջի։ Հները մեր երկրում գիտէին կամուրջներ շինել, իսկ ճանապարհները Թողնել Աստծու կամքին. այժմ ընդհակառակն է կատարւում. տեղ-տեղ ճանապարհներ շինում են այդ խուլ գաւառական անկիւններում, իսկ կամուրջների կառուցումը համարւում է շռայլութիւն...

Զաբըղի հովտից դարձեալ վերելք և մեր առաջ ընդարձակ լեռնադաշտ մինչև

Որոտն գետի ձախակողմեան բազուկը՝ Կորիսի գետը։

Այդ ընդարձակ լեռնադաշտի վրայ գտնւում են միքանի մեծ գիւղեր զուտ հայ ազգաբնակութեամբ. դրանցից մէկը մեր ճանապարհի վրայ է և կոչւում է Տեղ, իսկ ռուսները թուրքերից աղաւաղած Դ՞ըղ անունն են ընդունել։ Այդտեղից մինչև Կորիս 20 վերստ է։

Մօտ 500 տնից բաղկացած այս գիւղի մէջ երևում են երկյարկանի և պատշգամբաւոր տներ։ Ունի տարրական ուսումնարան։ Պատահում են եւրոպական տարազով մարդիկ և կանայք։ Արտերում տեսնում էք կատարելագործուած երկաթէ գութաններ։ Չկարծէք թէ Գիւղատնտեսական Ընկերութեան կամ կոկարդաւոր ագրոնոմների ջանքերով են մտել այդ գութանները գիւղացիական տնտեսութեան մէջ։ Ո՛չ. կեանքի նիւթական պահանջներում մեր գիւղացին սովորել է ինքն իր գլխի ճարը տեսնել, որովհետև շատ երկար նա պէտք է սպասի որ բիւրօկրատիական մեխանիզմը շարժուելով իրան էլ հասնի...

Աւելի անմխիթարական է գիւղացու վերաբերմունքը դէպի ոչ նիւթական, այլ

մորալ պահանջները. Նրա մտաւոր զարգացումը, օրինակ, այն վիճակի մէջ չէ, որ տպագրական խօսքը Նրա համար պահանջ լինի։

Գիւղերում այժմեան դպրոցական ուսուցիչներն էլ մեծ մասամբ տեղական ժողովրդից կտրուած պաշտօնեաներ են։ Կողմնակից լինելով «բնական մեթոդին», որով դասաւանդութիւնից խպառ հեռացւում է մայրենի լեզուն, հազիւ թէ այդ գործիչները նպաստեն ընթերցասիրութեան։ Դըպրոցներին կից չկան գրադարաններ, ընթերցարաններ, չեն կազմակերպւում դասախօսութիւններ. մի խօսքով սկզբնական դպրոցը չի կատարում այն դերը, որ յատուկ է նրան, օրինակ, գեմստվական նահանգներում...

Աւելի եւ մեծ է Խնձորեսկ գիւղը, որ չի երեւում ճանապարհից և ընկած է լեռնադաշտի հարաւային մասում։ Այդ գիւղը ունի աւելի քան 600 տուն, մօտ 4000 բնակիչներով։ Ասում են՝ կան միքանի տասնեակ հազար դրամագլուխ ունեցող գիւղացիներ։ Բազուից ներմուծուել են շռայլութեան իրերը և մոդային հետևելու պահանջներն անգամ, սակայն ամբողջ գիւ-

ղում չի ստացւում մի օրինակ «Մուրճ». երևի աւելի բախտաւոր չեն օրաթերթերը։ Պարզ է որ մոլալ, մտաւոր պահանջները թմրած վիճակի մէջ են. դրանց զարթեց-նելու համար հարկաւոր են՝ հասարակական ոյժերի աւելի ազատ գործադրութիւն յօ-գուտ ժողովրդի մտաւորականութեան և՝ կրթական հաստատութիւնների աւելի սերտ կապակցութիւն տեղական պայմանների հետ. մի խօսքով այն, ինչ այնքա՜ն դեղե-ցիկ կերպով ձևակերպեց ներքին գործոց մինիստր Սվեատոպոլկ-Միրսկին, շեշտելով կառավարութեան վստահութեան մասին դէպի ինքնավարական մարմինները և բա-րեացակամ վերաբերմունքը դէպի ազգա-բնակութեան կարիքները...

*
* *

Այնքան քիչ անցուդարձ անողներ են պատահում ճանապարհին որ մարդ առան-ձին հետաքրքրութեամբ է աչք դարձնում հեռւում երևցող փոշու ամենամի ամպի վրայ։ Մեր մօտով սրընթաց անցաւ պոստային սայլակառք՝ ակցիզառու պաշտօնեաներով։ Այդ ռուս մարդիկ իրանց պարտականու-

թիւնների շնորհիւ ստիպուած են մուտք գործել ամենախուլ անկիւններն անգամ և շփուել խաւար գիւղացիների հետ, որոնց մէջ դեռ ևս կենդանի են պարսկական ռեժիմի աւանդութիւնները։ Յաճախ իրանց իրաւունքների անգիտակ գիւղացիները համակերպւում են դրանց բացարձակապէս ապօրէն պահանջներին։

Ինձ մի վստահելի ականատես, օրինակ, պատմում էր հետևեալ դէպքը, որ պատահել էր հէնց միքանի օր առաջ մի հայ գիւղում։

Գիւղի հրապարակում ձիուց իջնում է մի սպառազինուած ակցիզառու և դոռոզաբար հրամայում մօտը կանգնած գիւղացուն.

—Է՛յ, բռնիր ձիուս սանձը։—Գիւղացին բռնում է, սակայն պատկառանքով և խոնարհութեամբ յայտնում է.

—Աղա, ես գործ ունեմ, պէտք է գնամ։

Ակցիզառուն իսկոյն բռնկւում է այդ «ընդդիմադրութիւնից» և սկսում մտրակել գիւղացուն, ամեն մի հարուածի հետ հայհոյանքների տարափ թափելով խեղճի գլխին։ Եւ որքան մեծ համբերութեամբ է գիւղացին տանում այդ բոլորը, այնքան կատա-

ղի է դառնում յարձակումը։ Հարուածողը, իր ձեռները աւելի ազատ շարժելու նպատակով, գետին է գցում իր շապկի օսլայած թևնոցները։ Հանդիսատես գիւղացիներից մէկը իսկոյն վազում է և ակնածութեամբ վերցնելով այդ թևնոցները՝ ձեռքին բռնած սպասում է, մինչև որ հանդարտուի «աղա ակցիզնին», ապա սովորական խոնարհութեամբ մատուցանում է օսլայած թևքերը ըստ պատկանելոյն...

Պատմողը զարմացաւ, երբ ես ասացի թէ տուժողը իրաւունք ունէր դանդատուելու ակցիզառուի ապօրէն գործողութիւնների համար։ Այդ խուլ անկիւններում օրէնքի վարկը իհարկէ գցում են նկարագրած տիպի պալոնները...

*
* *

Փոշին ճանապարհի վրայ աւելի մեծ չափեր էր ստանում. մեր առջևից գնում էր «քոչը»։ Թուրքեր էին. ասենք, տեղացի քիւրդերն էլ քիչ են տարբերւում թուրքերից. շիա կրօնը և պարսկական ռեժիմի դարևոր ազդեցութիւնը ի մի են ձուլել տարբեր ցեղական ծագում ունեցող այդ

մահմէդականներին. քիւրդերը մոռացել են իրանց լեզուն, տարազը և դառել են շըր-ջապատող Թուրքերի նման՝ շիա մուսուլ-մաններ։

Կանայք, տղամարդիկ, ծեր, երեխայ, բեռնաբարձ ձիեր, եզներ ու գոմէշներ, խումբ-խումբ արջառ, ոչխար, շներ—այդ բոլորը մի խառնիճաղանջ բազմութիւն էր կազմում։

Աւելի կեղտի, չարքաշութեան, ծայ-րայեղ անկուլտուրականութեան տպաւո-րութիւն էր Թողնում այդ քոչը, քան բա-նաստեղծական հրապոյրներ պարունակում։

Վերջապէս դուրս եկանք այդ ժխորից, որ լքցնում էր օդը փոշով, մարդկանց հա-րայհրոցով ու ճիչով, շների հաջոցով և տաւարի բառաչով։

Ճանապարհը զառիվայր պտոյտներով իջնում էր Գորիսի գետի հովիտը։

Հեռուից երևաց գետի միւս ափում, հարթ զաշտավայրի վրայ փոքրիկ Նոր Գո-րիսը, որ միայն այս տարի գաւառական քաղաք լինելու պատիւն ունեցաւ։ Գետի ձախ ափին Հին Գորիս գիւղն է։ Նրա յե-տևից սարը բարձրացել է ինչպէս մի պա-րիսպ մի շարք կոնաձև աշտարակներով։

Շաքարի գլխի նման կանգնած այդ բուրգերը բնութեան մի խաղ է, առաջացած շատ պարզ պատճառներից. անձրևի կաթիլները, թափուելով փխրուն հողի շերտերի վրայ, պոկել են ու տարել աւելի թոյլ կպած մասնիկները, և մնացել են ժայռի կտորների տակ պաշտպանուած շերտերը։ Այժմ էլ կարելի է նկատել հողային կոնաձև սիւներից միքանիսի գլխին գլխարկի նման դրած քարի մեծ կտորները. ժամանակի ընթացքում այդ քարէ գլխարկներն էլ կ'ընկնեն, ինչպէս արդէն ընկել են շատ սիւների գագաթներից, և աւելի արագ առաջ կը գայ անձրևի կաթիլների աւերիչ դերը. կը մաշուեն, կը քերուեն, կը փոքրանան այդ կոնուսները։

Այդ հողային բուրգերի մէջ ծակուած են խորշեր, որոնք այժմ էլ ծառայում են իբրև բնակարան, խոտանոց։ Անշուշտ այդ այրերից շատերը բնական են, սակայն կան և մարդկանց ձեռքով փորուածներ։ Միքանիսի մուտքը այնքան բարձր է գետնից, որ պէտք է սանդուխներով բարձրանալ։

Արհաւիրքներով լի մահմէդական բռնութեան տարիներում այդ ծակերը կամ «քարատակ»-երը հայերի համար եղել են

թագնուելու տեղեր. պարանի սանդուխնե-րով էին նրանք բարձրանում՝ ապաստա-նելու այդ ծակերում, յետոյ իրանց յետևից վեր էին քաշում պարանը և այդպիսով կըտ-րում գետնի հետ հաղորդակցութիւնը։

Քիչ սև օրեր չեն տեսել Սիւնիքի հա-յերը հիւսիսից խուժած լեզգիներից, ա-րևմուտքից ասպատակող օսմանցիներից և հարաւից հրով ու սրով յարձակուող պար-սիկներից։ Ենիկ քիւրդ և թաթար ցեղերն էլ գայլերի նման դիշատում էին այդ թըշ-ուառ հօտը։ Յիշած «ծակերը» քիչ օգ-նեցին հային և նա մտածեց Դաւիթ-բէգի ժամանակ սրի ուժով քարուքել իր ան-տանելի կացութիւնը, բայց այդ փայլուն փորձն էլ խեղդուեց մահմէդական ծովում, ինչպէս անօգնական լուղորդի ջանքերը վիթխարի ովկիանոսի կատաղի ալիքների մէջ...

Այդպիսի «ծակերով» կամ քարանձաւ-ներով է ծածկուած Կորիս գետի ամբողջ ձորը. երևի այդտեղից է «Ձագեձոր» հին անունը, որ թըրքական աղաւաղ արտասա-նութեամբ (ծ, ձ հնչիւններ նրանք չունեն) դառել է Զանգեզուր։

*
* *

Այժմեան Զանգեզուր գաւառի մէջ մըտնում են հին Սիւնեաց աշխարհի սահմանակից գաւառներից միայն մի քանիսը։ Դրանցից մէկով մենք արդէն անցանք. Արցախին սահմանակից այդ Աղահէճք կոչուած գաւառը բռնում էր, հաւանականօրէն, Հաքարի գետի վերին աւազանը։ Այդ գետի օժանդակ Զաբղից յետոյ մենք մտանք Հաբանդ գաւառը, որի կենտրոնումն է Գորիսը։

Ամբողջ օրը երկինքը ամպամած էր, եղանակը զով։ Երբ հասանք քաղաք սկսեց անձրև մաղել։ Դիմացի լեռները ծածկուած էին մշուշի թանձր քողով։

Կառապանս յայտնեց որ այդ փոքրիկ նոր քաղաքում գոյութիւն ունեն երկու հիւրանոց. «Կոնկուրենցիա» և «Պրոգրես»։

— Ո՞րն է լաւը։

—«Կոնկուրենցիան», աղա։

Գաղափար չունենալով կորիսեցիների պրոգրեսի մասին, աւելի մատչելի համարեցի նրանց մերկանտիլ հասկացողութեան՝ կոնկուրենցիան... Եւ իսկապէս, ի՞նչ առաջադիմութիւն կարող էր լինել մօտ 3 հազար ազգաբնակութիւն ունեցող մի զուտ հայկական քաղաքում, ուր ոչ մի օրինակ... հայ ամսագիր չի ստացւում...—«Զարմանալի

չափ» կ'ասի ընթերցողը, որ լսել է թէ՝ գործածած սապոնի քանակութեամբ են որոշում «քաղաքակրթութիւնն ու պրոգրեսը»...—Հոգ չէ. ով որոշ շաբլոնների սիրահար է, թող այդպէս էլ շարունակի մըտածել. ինձ թւում է որ իմ մաշտաբը, որոշ մորալ տեսակէտներով, աւելի պակաս ճշտութիւն չունի, քան ձեր սապոնն ու անուշահոտ ջրերը... Աւենք «Կոնկուրենցիայում» ինձ սպասում էր ոչ անուշ բուրմունք, այլ գարշահոտութիւն։ Չգիտեմ ինչ կը գտնէի «Պրոգրեսսում»...

Իմ իջևանած հիւրանոցը զետեղուած էր քարուկրից շինած մի երկյարկանի կոկիկ տնում, որի նման էին այդ նոր քաղաքի ուղիղ և լայն փողոցների համարեա բոլոր շինութիւնները, բոլորն էլ Ղարաբաղի մայրաքաղաք Շուշու ճարտարապետական ոճի հետևողութեամբ։

Զարմանալի էլ չէ որ Շուշին, կամ ինչպէս ժողովուրդն է ասում՝ «Ղալան», այդպէս մեծ ազդեցութիւն ունի Գորիսի վրայ. Ղարաբաղի մայրաքաղաքը միակ «քաղաքակրթուած» կէտն է, որի հետ պոստ-հեռագրական յարաբերութիւն ունի Զանգեզուր գաւառի կենտրոն Գորիսը։ Ամբողջ

գաւառում, որ բռնում է 6,743 քառ. վերստ տարածութիւն, ուր հաշւում են 426 բնակավայր և 145,653 աղգաբնակութիւն, *)—այլ ևս ոչ մի կէտ չկայ, որ պօստ-հեռագրական հաղորդակցութեամբ միացած լինի ոչ միայն դրսի աշխարհի, այլև նոյնիսկ իր վարչական կենտրոն «Գերիւսի»ի հետ։

Գորիսում վերջանում են պօստն ու հեռագիրը։ Եթէ ձեզ հարկաւոր է նամակ ուղարկել դիցուք Հին-Նախիջևան, որ գտնւում է Հարեւան գաւառում և Գորիսից շատ լինի հեռու 110 վերստ,—դուք պէտք է առաջուց իմանաք, որ պօստը տանելու է ձեր նամակը նախ Շուշի, Եւլախ, Թիֆլիս, Ալեքսանդրօպոլ, Երևան և ապա միայն Նախիջևան... Ուրեմն, 110 վերստ անցնելու փոխարէն ձեր նամակը պտտելու է մերձաւորապէս 800 վերստ։ Եւ դեռ լաւ է եթէ տասներորդ օրը նա տեղ հասնի։ Այն էլ պէտք է ի նկատի ունենաք որ պօստը շաբաթը միայն երկու անգամ է գնումգալիս Գորիս... Ասենք մեր գաւառական քաղաքներից շատերի համար դա նորմալ երևոյթ է...

*) Кавк. кал. 1904.

Տեղացիները գիտեն որ դեռ անցեալ դարի 60-ական թուականներին ծրագրուած է եղել՝ միացնել Նախիջևանը Կոբիսի հետ պոստային ճանապարհով. նոյնիսկ շինուել է ճանապարհի մի մասը Նախիջևանից մին-չև Զանգեզուրի սահմանի մօտ գտնուող Բիչանագը, որ ծառայում է Նախիջևանի շինովնիկների համար իբրև ամառանոց. սակայն Բիչանագից դէնը ճանապարհը մը-նում է մինչև օրս չշինուած, թէև այդ մնացածը հազիւ 60 վերս տարածութիւն բռնի... Աւելորդ է երկարաբանել թէ ինչ կուլտուրական և տնտեսական օգուտներից է զրկւում գաւառը հաղորդակցական այդ աղքատութիւնից և թէ իսկական պրոգրես-սը այս կողմերում որքա՜ն հեռու է չակեր-տաւոր պրոգրեսսից...

Համեմատաբար աւելի բախտաւոր են գաւառիս Պղնձահանքերը (Մաղան), ուր գոյութիւն ունեն 8-ի չափ հանքեր և ձու-լարաններ, բանում են երկու հազարի չափ բանուորներ և միայն 1903 թ. 56,065 պուդ պղինձ է հալուել *)։ Հաղորդակցութիւն-ների բացակայութիւնը ահագին վնաս է

*) Պուդը ծախւում է 11—12 ռուբլի։

հասցնում և այդ արդիւնաբերութեան։

Ինձ յայտնեցին որ արդէն պոստի ճանապարհ է շինուած Կորիսից մինչև Հանքերը, սակայն դեռ ևս չի սկսուել անիւային հաղորդակցութիւնը, ուստի պոստը ուղարկւում է բեռնաբարձ։ Այդ էլ մի բան է...

---

Գ.

Միւս օրը կէսօրին ճանապարհ ընկայ Տաթև այդ վանքի վանահայր և վիճակիս յաջորդ Ներսէս վ. Մ.-Թանգեանի հետ, որ տասը տարի առաջ Շուշուայ թեմ. դպր. ուսուցչական խմբի անդամներից էր։

Վանքից շաբաթը երկու անգամ յատուկ մարդ են ուղարկում Կորիս՝ պոստ ստանալու։ Վանահայրը այս անգամ կարգադրել էր և ձիեր բերելու մասին։

Եղանակը զով էր և պարզ։ Մեր շաւիղը ընթանում էր նախ Կորիս գետի ափով ներքև, ապա, չհասած Քարահունջ գիւղին, մենք ծռեցինք արևմուտք և անտառապատ զառիվերով բարձրացանք մի ընդարձակ սարահարթ։ Այնուհետև բոլոր ժա-

ժանակ, մինչև Որոտնի ձորը, Հարաւ-արե-ւելեան ուղղութեամբ էինք առաջ գնում։

Այդ ընդարձակ լեռնադաշտի հիւսիսա-յին մասի հեռու հորիզոնում երևում էր Իշխլու լեռնային խումբը իր ձիւնապատ գագաթներով։ Իշխլուի ստորոտում, ասում են, գտնւում է մի լիճ (Ղարագեօլ), որի մօտերքում է սկիզբն առնում Կորիս գետը։ Ձով և դալար Սիւնիքի Իշխլուն ամբողջ ամառ իր գագաթների վրայ պահպանում է ձիւնի ծածկոցը և ջուր է մատակարա-րում իր կուրծքի ծերպերից հոսող վտակ-ներին։

Ճանապարհին ամենմի քայլափոխում դուք հանդիպում էք հրաբղխային զօրեղ գործունէութեան անջնջելի հետքեր. հողը, քարերը պատմում են ձեզ որ ժրաջան հայ գիւղացու քրտինքով, յաճախ նաև արիւ-նով ողողուած դաշտերը նախապատմա-կան ժամանակներում ականատես են եղել երկրի հրաբղխային սոսկալի ցնցումներին ու ժայթքումներին։

Ճանապարհից աջ, սարահարթի վրայ, կոնուսների նման զատ-զատ կանգնած են երեք սարեր. այդ Ուչ-Թափալարի ստորո-տում 180 տարի մեզնից առաջ Դաւիթ-

ըէգը իր քաջերով յարձակուեց հայերին նեղող Ղարաչոռլու շիա քիւրդ ցեղի վրայ և ոչնչացրեց նրան. այդպէս սկսեց իր հաչակաւոր ապստամբական շարժումը այդ նշանաւոր սիւնեցի դիւցազնը...

Մեր առջևից հեռու հորիզոնում երեւում էր մի սրածայր գագաթ, որից աջ տարածւում է պարսպաձև լեռների մի շարք։

—Ի՞նչպէս են կոչւում այդ լեռները, հարցրի ձիուս յետևից ոտքով քայլող Խուդուց, վանքի ծառայից։

—Աղունասար, եղաւ պատասխանը.

Մեր շուրջը՝ հիանալի մշակուած արտեր, ճոխ աճած հացաբոյսերով, որոնց լի հասկերը բարձրից ներքև էին նայում Խուդու վրայ։ Ասենք Խուդին էլ մի երևելի հասակ չունէր, թէև նրա փոխր մարմնի մէջ այնքան ոյժ կար որ նա յետ չէր մնում վանքի կերն ու հանդիստը առատօրէն վայելած մեր նժոյգներից։

Քարահունջի հողերին կպած են Խոտ և Շնհեր գիւղերի արտերը։ Այդ գիւղերը պատկանում են վանքին։ Այդպէս ուրեմն մենք մտել ենք Տաթևի ընդարձակ կալուածքի սահմանները։

Այդ հնադարեան վանքը այժմ ունի 9

գիւղ, չհաշուած վէճի մէջ 4 գիւղ, ինչպէս և Մեղրու և Կապանի զանազան տեղերում եղած մանր մունր կտորները։ Անվիճելի կերպով վանքին պատկանում է 21,400 դեսեատին տարածութիւն, որ բերում էր տարեկան 3,581 ռուբլի եկամուտ։ Վէճի մէջ եղած հողերի մեծ մասը (մօտ $2^1/_2$ հազար դեսեատին) դատաստանական պալատում վճռուած է յօգուտ վանքի։

*
* *

Հալիձոր գիւղի սահմաններում մտանք վանքի անտառը և երկար ժամանակ մեր շաւիղը ոլոր-մոլոր պտոյտներ էր անում կաղնի, թխկի (кленъ), հացիկի (ясень) և այլ տեսակ-տեսակ ծառերի միջով, որոնց մէջ նկատելի էր տեղ-տեղ և արջածառ (рябина)։ Անտառային շաւղի վրայից կախ-կըխուած ճիւղերը ստիպում էին ամեն մի քայլափոխում գլուխ կռացնել։

Անտառից դուրս եկանք մի բաց տեղ։ Մօտերքում գտնւում էր Հալիձոր գիւղը, որ չէր երևում մեր կանգնած տեղից։ Ի դէպ, պէտք է նկատել որ այս Հալիձորը տարբեր է Դաւիթ-բէգի պատմութեան մէջ

հուշակուած Հայիձորից. որ գտնում է հին Բաղաց աշխարհում կամ այժմեան Ղափանում, ուր դեռ ցոյց են տալիս ուղևորին քաջ սիւնեցու անառիկ բերդի աւերակները...

Ինքը Որոտն գետը և նրա ձորի յատակը դեռ չէին երևում, այլ միայն դիմացի բարձր լեռնադաշտը, որի սեպաձև պատուածքի եզրին զետեղուած է Երիցաթումբ գիւղը և՝ նրա յետևում՝ հարթ կանաչ սարալանջը, պարփակուած անտառախիտ լեռների կոհակներով։

Առաջ ընթանալով մի այլ բաց տեղից տեսայ հեռւում մի դալար բարձրավանդակի վրայ, անդնդախոր քարափի գլխին բուն դրած Տաթևի վանքը, իր երկու սրածայր կաթուղիկէներով։

Արդէն մօտ էր Որոտնի ձորը, մենք դուրս էինք գալիս Հարանդ գաւառի սահմաններից և մտնում Հին Սիւնեաց Ծղուկ գաւառը, որ բռնում էր հնում Որոտնի կամ Բազարչայի վերին աւզանը։

*
* *

Դէպի Որոտնի ձորը իջնում է մի կե-

ռումեռ կածան. դրանից ձախ խորխորատ, իսկ աջ—փլուած ապառաժների անհելի զանգուած։ Այդ սեպաձև, կախկխուած ժայռերի գլխից կարելի է միքանի զինուած մարդկանցով ամբողջ վաշտերի առաջն կտրել. իզուր չէ այդ վտանգաւոր անցքը Սախկալ-Թուլթան կոչւում։

Անդնդախոր ձորի հակառակ կողմի բարձրաբերձ սարահարթը՝ սեպաձև իջնելով դէպի գետը՝ թողնում է իր և ջրի արանքում փոքրիկ տափարակ, որի վրայ շինուած է Մեծ Անապատը։ Նրա կողքով Տաթևի գետակը թափւում Որոտնը։ Երևում են Մեծ Անապատը շրջապատող քառակուսի հաստ պարիսպները, որոնց չորս անկիւնում մի-մի աշտարակ։ Այդ բերդ-անապատի կենտրոնում նկատելի է եկեղեցու կտուրը փոքրիկ գմբէթով և զանգակատնով, իսկ ներսում՝ պարսպին կից՝ մի շարք խուցիկներ։ Թէ Անապատի բակում և թէ շուրջը տընկուած են անհագին թթենիներ։

Ինձ պատմեցին, որ մի այլ Անապատ էլ գտնւում է Հալիձորի դիմաց և կոչւում է Հարանց Անապատ... Իրար կողքի երկու անապատ... XVII-րդ դարում, երբ շինուել են այդ անապատները, երևի հայերի մէջ ճըգ-

նելու տենչով բռնուած ա՜մպագին հօսեր կային... Այժմ չղջիկներն ու բուերն են բուն դրել այդ ամայի եկեղեցիներում և խուցերում, ուր այլևս ո՛չոք չի խանգարում նրանց անդորրութիւնը...

Հասանք ձորի յատակը։

—Բայց ո՞ւր է Որոտնը,—հարցրի ես վանահօրից.—մեր առջև գետին է մինչև միւս ափը։

—Իջնենք ձիուց, մենք Սատանի Կամուրջն ենք հասել. այդ գետինն է այն կամուրջը, որի տակից անցնում է Որոտնը։

Խուղին անցկացրեց մեր ձիերը ձորի միւս կողմը, որ ներկայացնում է սպիտակ, դեղին և կարմիր ժայռերի հաստ շերտեր՝ փորուածքներով ու խորշերով։ Ստալակտիտների զանազան ձևերի ու մեծութեան կախ:կլխուած լեզուակներ, ապառաժների ճեղքերում բուսած վայրի խոտեր ու մացառներ ծածկում են յեռան վիլթխարի կուրծքը, որ թաց է նրա խորքերից ծորող հանքային ջրերից։ Կամուրջի աջ կամ հիւսիսային կողմից ձորի երկու կողքերը իրար մօտեցել են և, կնճիռներ կիտած, դաժան հայեացքով իրար են չափում, կարծես պատրաստ են իրար վրայ

փլուել. բայց նրանց բաժանում է կատաղի Որոտնը, որ, հիւսիսից գահավիժելով երկու հսկաների մէջ, լի ցասումով գոռում է, գոչում, կատաղութիւնից փրփրում և նրանց ոտների տակ ական փորելով փախչում ստորերկրեայ ճանապարհով։ Նրա ալիքները յորձանք տալով դուրս են վիժում կամրջի ձախակողմից և լաց ու կոծով հեռու փախչում այդ վտանգաւոր վայրից...

Սքանչացած բնութեան այդ ահռելի, միաժամանակ խրոխտ ու հոյակապ տեսարանից, ես ափսոսում էի որ նկարիչ չեմ՝ անմահացնելու համար Օրիներ և Դաւիթներ ծնող այդ ձորերից մէկի պատկերը...

Մեծ զգուշութիւններով մենք մագլցեցինք ժայռերի վրայ, որոնք վտանգաւոր էին իրանց խոտերի թանձրախիտ աճմունքով, և անցանք Սատանի Կամուրջի այն կողմը, որտեղից մուտք է գործում Որոտնը։ Դա մի զարհուրելի վիհ էր իր երախի այլանդակ պատռուածքներով. փրփրադէզ Որոտնը գահավիժւում էր և կորչում խոլական խաւարով ծածկուած ստորերկրեայ կամարների տակ. վերևից կախկխուել են ստալակտիտեան բիզ-բիզ ատամներ և ժայռերի ծերպերից՝ խոտեր ու մացառներ։

նման տեսարան է ներկայացնում և այդ բնական տունելի հակառակ կողմը։

Կարծես կիկլոպների հուժկու բազուկներ են իրար վրայ դիզել այն վիթխարի ժայռերը, որոնցից կազմուած է այդ բնական կամուրջը…

Միւս ափին հանքային տաքուկ ջրերի առաջ շինուած են նահապետական ձևով աւազաններ։ Այդտեղ մենք հեծանք մեր նժոյգները։

Արևը մայր մտնելու մօտ էր։ Մենք անցել էինք մօտ քսան և հինգ վերստ, առանց հանգստանալու։ Այժմ վերջին և ամենադիք վերելքն էր մեր առջև, վանքը հասնելու համար, որ Սատանի Կամուրջից չի երևում և գտնւում է մօտ երկու վերստ նրանից հարաւ-արևմուտք, դեռ հեռուից քիչ առաջ մեր տեսած բարձրաբերձ լեռնադաշտի եզրին։

Օձապտոյտ շաւիղը տեղ-տեղ այնքան դիք էր որ անսովոր մարդու թւում էր թէ անկարելի է ձիու մէջքից վար չգլորուել։ Մեր յոգնած նժոյգները հևալով վեր էին մագլցում և շուտ-շուտ կանգ առնում՝ շունչ առնելու համար։ Զառիվայրը ծածկուած էր ծառերով և թփերով և փլած ապառաժների ահագին կտորներով։

Ահա վերջին պտոյտը և քրտինքի մէջ կորած ձիերը հասան լեռնադաշտի գլուխը։ Ծռելով հարաւ լեռնադաշտի դէպի ձորը նայող եզերքով անցանք վանքի դեռ չհրնձած արտերի կողքով և դուրս եկանք հնադարեան սրբավայրի հսկայ պարիսպների տակ։

Մթնել էր արդէն։ Կիսախաւարի մէջ լուռ կանգնած պարիսպներն ու բուրգերը, կամարակապ դարպասի գլխին ցցուած մատուռ-դիտանոցը և պատերի յետեից երկինք բարձրացող երկու սրածայր գմբէթները ինչ-որ խորհրդաւոր վեհութիւն էին ներշնչում... Մարդ տխրութիւն ու սարսուռ էր զգում, յիշելով դրանց ալեոր գլուխներով հազար տարիների ընթացքում անցած քաղաքական արհաւիրքներն ու փոթորիկները, դրանց տեսած հալածանքները, կոտորածներն ու հրդեհմունքները...

Կամարակապ երկար անցքով ներս մըտանք վանքի բակը, ուր երկու վարդապետներ, հոգևոր վարչութեան քարտուղարը և միքանի ծառաներ սպասում էին վանահօր։

Վանահօր կարգադրութեամբ ինձ յատկացրին վանքի հիւսիս-արևելեան մասում

գտնուող շինութեան հիւրասենեակներից մէկը։

Դուրսը ցուրտ էր և մութ, ինչս վաստակած։ Այդքան սար ու ձորերի յետևում, պատմական մի այդպիսի վայրում շատ հաճելի էր գտնել մաքուր, լաւ կահաւորուած ու լուսաւորուած օթևան և հանգստանալ։

---

Դ.

Պայծառ ու զով առաւօտ էր, երբ ես կանգնած սենեակիս առջև, պատշգամբի վրայ, զմայլւում էի Սիւնեաց աշխարհի մի հրաշալի լանդշաֆտով։

Դիմաց՝ կանաչ սարահարթ, որի մէջտեղում խրճիթների մի կոյտ—Տանձատափ գիւղը, հորիզոնում՝ Գազբոյլ լեռնագօտին, որի գագաթների վրայ տեղ-տեղ ձիւնի շերտեր են երևում։ Ձախ թևի վրայ՝ Որոտնի ձորը իրար թիկունք մտած բարձր կողերով, աւելի հեռու՝ Երիցաթումբը, լեռնադաշտեր, և հորիզոնում՝ արևի շողերի մէջ նշմարւում Դիզափայտի կոհակները։ Այդ հեռաստանը բաժանուած է իմ կանգնած տեղից մօտ եօթանասուն վերստ տարածութեամբ։ Աւե-

լի և չքնաղ է տեսարանը, երբ Դիզափայտի լեռների յետևից ծագում է վարդաճաճանչ արշալոյսը։

Աջ թևի վրայ, կիսակործան պարիսպների յետևում, կանգնած է Տաթևի տաճարը իր դէպի արևելք նայող բաց ճակատով և ծածկում է հեռաւոր տեսարանները։

Շինութիւնը, որի երկար պատշգամբի վրայ ես կանգնած եմ, բաղկացած է մի շարք հին խուցերի կտուրների վրայ շինուած սենեակներից։ Հին խուցերի և նոր սենեակների յարկերը այդ ձև շաղկապուելով յենուած են իրանց մէջքով վանքի պարսպին։ Այդ շինութեան առջև գտնւում է ծառերով ու ածուներով բռնուած մի փոքրիկ տափարակ, որի եզերքը իջնում է դէպի անդնդախոր ձորը։

Իջնենք պատշգամբից, անցնենք վերև յիշած կիսակործան պարսպի միւս կողմը— վանքի բակը։

Վանքի բռնած տափարակը արևելքից, հարաւից և արևմուտքից դէպի անդունդներն է իջնում։ Այդ բնական պարիսպները երեք կողմից անառիկ են դարձրել բերդ-մենաստանը. մնում է անպաշտպան դէպի ձորը նայող տափարակի հակառակ

մասը, այսինքն լեռնադաշտի կողմից. այդ մասում էլ բարձրանում են վանքի հաստահիմ պարիսպները իրանց գոռոզ բուրգերով։

Վանքի Թերակղզիաձև տափարակի վըրայ, աւելի մօտ նրա արևելեան եզերքին, կանգնած է տաճարը։ Բերդ-վանքի բոնած տարածութիւնը լաւ տնտեսելու նպատակով նրա բոլոր շինութիւնները, բացի եկեղեցուց, կամ կից տուած են պարիսպներին կամ իրանց դրսի պատերով ուղղակի հէնց անդնդի եզերքից են բարձրանում։ Այդպէս, վանքի կամարակապ մուտքի դիմաց՝ պարսպին կպած է ախոռատունը, նրա կողքին, արևմուտքից, ընթերցարանը և ապա մի շարք Թաղածածկ խուցեր ու սենեակներ, որոնք բոլորակի գնում են հարաւակողմը, ուր գտնւում է սեղանատունը, առաջնորդարանը։

Մեր տեսած կիսակործան պատերի անկիւնում այժմ էլ ցոյց են տալիս սենեակ մի ստորերկրեայ անցքով, որով վանքում պաշարւածները իջնում են եղել Որոտնի ձորը՝ ջուր վերցնելու նպատակով։

Տաճարի երեք կողմից մնում է բաւական մեծ հրապարակ, որ, օգտուելով վան-

քի աղբիւրից, այժմ փորձում են բուրաստան դարձնել։

Տաթեւի Տաճարը, ինչպէս յայտնի է պատմութիւնից, կառուցուած է IX-րդ դարում. այնուհետեւ թէ բնութեան եւ թէ իրար հետեւող մի շարք թշնամիների առաջացրած աւերումները նորից շինուել են. ամենավերջին նորոգութիւնը այն վիթխարի զանգակատունն է, որ կառուցուել է տասը տարի առաջ, պահպանելով հնի ճարտարապետական ոճը։

Դեռ IV-րդ դարում Տաթեւի տեղում մի անշուք եկեղեցի է եղել շինուած։ Մինչեւ որ Սիւնեաց աշխարհի եպիսկոպոսական աթոռը գտնւում էր Որոտնի վերին հոսանքում, նրա աջ ափին (Անգեղակոթի դիմաց) հռչակաւոր Շաղատ գիւղաքաղաքում, որ մի ժամանակ Սիւնեաց իշխանների ոստանն էր, չէր մտածւում Տաթեւի բնական ամրութիւններից օգտուելու մասին։ Բայց արաբական արշաւանքները ստիպեցին ուշք դարձնել Տաթեւի վրայ. 839 թուականին Դաւիթ եպիսկոպոսը գնեց Սիւնեաց իշխան Փիլիպպէից այդ տեղը, ապա բարեպաշտ հայ իշխանների եւ տիկինների նուիրած կալուածներով ու գանձերով հարս-

**տացած սրբավայրում 895—906 թուական-ներին կանգնեցին Պօղոս-Պետրոսի տա-ճարը։**

**Հարաւային կողմից նրա հետ ձուլուել է մի փոքրիկ եկեղեցի եւս, որ երկու ան-գամ հիմնովին կործանուել է, իսկ յետոյ երրորդ անգամ շինուել՝ Սիւնեաց աշխարհը մոռացութիւնից փրկող Ստեփաննոս Օրբէ-լեանի ձեռքով։ Այդ նշանաւոր պատմիչը ապրում էր XIII-րդ դարում։ Հետեւեալ խօսքերով է անմահացրած նրա յիշատակը այդ ս. Լուսաւորիչ եկեղեցու դրան վրայ.**

*ԶՏէր Ստեփաննոս Մետրապօլիտ Սիւնեաց որ է Պրոտոֆռանտէս Հայոց Մեծաց, որդի մեծափառ իշխանին Տարսայիճի եւ շինող սուրբ Եկեղեցւոյս, յիշեցէք ի Քրիստոս:*

**Այդ եկեղեցու շարունակութիւնն է մի կամարակապ սիւնազարդ սրահ, որի տակ հանգչում է մի այլ նշանաւոր գրող և ե-կեղեցական գործիչ. Նրա դամբարանի վրայ կարդում ենք հետեւեալ տողերը.**

*Շնորհիւն Այ շինեցաւ սբ. մատուռս եօթնալոյս րաբունապետին եւ երկրորդ Ոս-կեբերանին երից երանեալ վարժապետին մերոյ եւ չորրորդ Լուսաւորչին սրբոյն Գրի գորի Տաթեւացւոյն* **եայլն։**

Այդ այն Տաթեւացին է, որ խօսքով, գրչով և գործով մաքառում էր XIV դարում ազգային եկեղեցու թշնամի Ֆրանկիսկեան և Դոմինիկեան կրօնաւորների դէմ և այդպիսով ընդդիմադրութիւն էր ցոյց տալիս ունիթոռական պրոպագանդային Հայաստանում։

Գրիգոր Տաթեւացին ահագին ժողովրդականութիւն ունի մանաւանդ Սիւնիքում, ուստի զարմանալի չեն անկեղծ միամտութեամբ ձօնած չափազանցութիւնները այդ արձանագրութեան մէջ...

Բակի հարաւային մասում կանգնած է մի ուղղանկիւնանի օբելիսկ — դա վանքի հռչակաւոր սիւն-գաւազանն է, գագաթը պսակուած քարի մէջ քանդակուած խաչով։ Առաջնորդարանին կից եղել է մի պատշգամբ, որից ձեռքով կարելի էր հրել սիւնը և նա կ՛երերար իր տեղում. այժմ այդ պատշգամբը չկայ, իսկ սիւնը շրջապատուած է վանդակով և անշարժ կանգնած. այդ դրութիւնը երևի աւելի սազական են համարել վանական կեանքին...

Մտայ առաջնորդարանը կամ «թանաքան»,— դեղեցիկ կահաւորուած կամարակապ սենեակներ։ Դուրս եկայ առաջնոր-

դարանի պատշգամբը, որ կախուած է ուղղակի անդնդի վրայ և նայում է դէպի արևելք։ Գլուխ պտտեցնող բարձրութիւնից երևում են ներքևում՝ քարափի շարունակութիւն կազմող պատերը, նրանց տակ գտնուող սեպաձև ապառաժները, աւելի ներքևում սարի լանջից պոկուած մեծուփոքր քարերի խառնիխուռն կարկառ, ապա կանաչ զառիվայրներ և տափարակ մինչև Որոտնի փրփրագեղ հոսանքը։ Պատշգամբից երևում է Որոտնի ձորը, Սատանի Կամուրջը, Սախկալ-Թութանը, մեր եկած ճանապարհը և հեռաստաններ մինչև Դիզափայտի լեռները։

Առաջնորդարանից դուրս գալով անցանք բակը և մտանք վարդապետներից մէկի բնակարանը, որ բաղկացած է երկու փոքր սենեակներից. այդ կողմից ևս պատշգամբ կայ՝ կախուած դէպի Տաթևի ձորը իջնող քարափի գլխին։

*
* *

Ինձ հետաքրքրում էին վանքի պարիսպները և բուրգերը, իբրև հին բերդի

նմուշներ։ Բակից այդ պարսպների միայն վերևի մասն էր երևում։

Անցայ կամարակապ մուտքով, որի գլխին, ինչպէս սկզբում տեսանք, կանգնած է մատուռ-դիտանոցը։ Սրբատաշ քարերից կոփուած այդ փոքրիկ եկեղեցին շինուել է XI դարում և, իբրև հնութիւն, յամենայն դէպս, արժանի չէր հաւանոց դառնալու... Իհարկէ մեր մերկանտիլ դարում ձուն և հաւի միսը աւելի են գնահատւում, քան սրբութիւններն ու հնութիւնները, սակայն վանքում այլ վերաբերմունք կարելի էր պահանջել...

Կամարակապ անցքը վերջանում է։ Ձեր առաջ բացուած է ընկուզի տախտակից կռած-կոփած հաստուպինդ դուռը, որ իր վրայ կրում է անթիւ թշնամիների կատաղի հարուածների հետքեր, փոսեր։ Դռան կողքերից կանգնած են մի-մի քար և դրանց վերևից դրած է երրորդը. այդ միապաղաղ և տաշած 3 քարերն իրանց դասաւորութեամբ յիշեցնում են նախապատմական Յունաստանի Մեկինեան դռները։ Այդ քարերից վերինը արդէն ճաքել է։

Դռան առաջ երկու հաստահիմն սիւների վրայ յենուած է կամարը, որի տակ

կանգնողին կարող են տեսնել վերևից բացուող դռնակից, որ ծածկւում է քար սալով։ Դարպասից աջ ու ձախ հաստ պարիսպներն են, որոնք պաշտպանում են վանքի միակ անպաշտպան մասը լեռնադաշտի կողմից։ Ձախ պարիսպը,—որի յետևից՝ խուցերի կտրին շինուած մեզ ծանօթ նոր շինութիւնն է և բանջարանոցը,—շարունակւում է մինչև անդունդի եզերքը, իսկ աջ պարիսպը անկիւն է կազմում և ծռւում արևմուտք ու հասնում Տաթև գետակի փորած խոր ձորի եզրը և շարունակւում՝ սեպաձև քարափի գլխով։ Պարսպի անկիւններում կանգնած են մի ժամանակ երևի գոռոզ բուրգերը երկշարք ծակերով։ Այդ գլանաձև բուրգերի դրսի մակերևոյթի վրայ աչքի են ընկնում գետնից բարձր, մի շարքի վրայ, երեք վիթխարի կտուցաձև ցցուածքներ սալաձև քարերից։ Իւրաքանչիւր կտուցի ներքևից բուրգի ներսն է տանում մի անցք։ Այդ կտուցների պաշտպանողական դերը չկարողացայ ինձ բացատրել։

*
* *

Իր ժամանակ Տաթևը հռչակուած էր իբրև զօրեղ ամրութիւն, այդ պատճառով հեռու գաւառներից անգամ ժողովուրդը յաճախ ապաստան է գտել Նրա հաստուպինդ պարսպների յետևից։ Հեռաւոր Գողթան գաւառից անգամ փախչում էին Տաթևի վանքը։

Այն, ինչ անկարող է եղել կատարել հայերիս բաժան-բաժան եղած, պառակըտուած ու թոյլ աշխարհական իշխանութիւնը, փորձել է իրագործել եկեղեցին։ Քաղաքական միացնող իդէալներից զուրկ մեր ժողովուրդը իր ամբողջ յոյսը դրել էր հոգևորականութեան ու եկեղեցու վրայ... Հնում իշխանները, բարեպաշտ հայ տիկիններն ու ժողովուրդը իրանց հոգու փրկութեան համար նուէրներ էր որ բերում էին վանքերին։

Տաթև մի ժամանակ ունեցել է մօտ 25 սեփական գիւղեր։ Տաթևի թեմում Ստեփաննոս Օրբէլեանից առաջ 1400 հայ գիւղ էր հաշւում, իսկ այդ պատմիչի ժամանակ 720։ Այժմ Տաթևի յաջորդութեան մէջ 90 գիւղ է մնացել 63 հազար ժողովուրդով։ 1903 թուականի ընթացքում, հ. յաջորդի մատեանների համեմատ, ծնուել են 1408

ար., 1204 իգ. սեռից, կատարուել է 683 պսակ, տեղի են ունեցել 502 ար. և 487 իգ. մահեր, ուրեմն 4284 դէպք, որոնցից դրամական շահ ունի հոգևորականութիւնը այդ յաջորդութեան մէջ։

Մի ժամանակ վանքում ապրում են եղել 500 կրօնաւորներ։ Մենք տեսանք Մեծ Անապատը, յիշեցինք, որ Նրա կողքին եղել է և Հարանց Անապատը բազմաթիւ ճգնաւորներով։ Երևակայեցէք թէ այդքան բերաններին լիութիւն տալու համան ինչ միջոցներ էին հարկաւոր։ Այժմ Անապատներն ամայի են, իսկ վանքում բացի վանահայր-յաջորդից կան երկու վարդապետներ, այն էլ մերձաւոր Տաթև գիւղից, որ հազիւ երկու վերստ հեռու լինի վանքից և գտնւում է Նրանից հիւսիս-արևմուտք, Պետրուսախաչ սարի ստորոտում։ 1897 թուականի ժողովրդագրութեամբ Տաթև գիւղում եղել է 1881 շունչ։ Վանքապատկան այդ գիւղում կայ սկզբնական մի ուսումնարան, որի ուսուցիչը յոյն է...

Չնայած որ վանքի ընթերցարանը բաց է բոլորի համար—գիւղացիները չեն օգտւում Նրանից։ Եւ ինչու զարմանալ հասարակ տգէտ գիւղացիների վրայ, երբ ըն-

թերցանութիւնը պահանջ չէ նոյնիսկ վանքի երկու վարդապետների համար, որոնց միակ գործն է—օրը երկու անգամ եկեղեցում մեն-մենակ կանգնած ժամ ասել։ Բայց դրանց անընթերցասիրութիւնն էլ զարմանալի չէ. այդ ծերունիներից մէկը պարզամտութեամբ հաւատացած էր որ ճապոնացիները «հայ-քրիստոնեաներ» են...

---

## Ե.

Յուլիսի 7-ին առաւօտեան ճանապարհ ընկայ Տաթևից դէպի հարաւ-արևմուտք, նպատակ ունենալով հասնել Քաջարանց գիւղը, որի հեռաւորութիւնը վանքից կը լինի մօտ 30 վերստ։

Տաթև գիւղում վարձել էին ինձ համար մի ձի և մի ջորի իրանց երիտասարդ տէրերով։

Դուրս գալով վանքից անցանք նրա միքանի ջրաղացների մօտով և քարէ կամրջով, որ մեզ հասցրեց վանքի տակով հոսող գետակի միւս ափը։ Պէտք է նկատել որ այդ գետակի մէջ հարաւից թափւում է մի այլ գետակ, որ ընդունում է իր

մէջ, դարձեալ հարաւից, երրորդը։ Վան-քից ներքև, չհասած Մեծ Անապատին, ե-րեքն էլ միացած թափւում են Որոտնը, իբրև մի օժանդակ, որին մենք տուինք՝ Տաթևի գետակ անունը։ Այդ երեք ճիւղե-րը կոչւում են Քարհանոնց, Աղանձու և Ջղրուանի։

Ընթանալով դէպի հարաւ, մենք մերթ բարձրանալով, մերթ իջնելով, անցանք մի-ջին գետակի ձորով, ապա ամենահարաւա-յինի հովտով դիմում էինք հարաւ, դէպի Գաղբոյլ լեռնագօտին։

Այդ գետակները իրարից բաժնող բլուր-ներից մէկ վրայից յետադարձ հայեացք ձգեցի և տեսայ հորիզոնի հիւսիսային մա-սում մեզ ծանօթ Իշխլուի ձիւնապատ գագաթները։ Իմ առջև՝ դալար, ճոխ արօ-տատեղիներով և խոտահարքներով ծած-կուած Գաղբոյլի պարսպաձև լեռնաշարքն էր դիզացած։ Աջ թևի վրայ անտառապատ Հարսնավազ գօտին էր բաժանում մեզ հին Բաղաց աշխարհից կամ այժմեան Մաղա-նից (Հանքերից)։ Ձախ կողմից՝ Լորուայ ձորի անջրպետ լեռներն էին։ Տաթևի ալե-ծածան լեռնադաշտը՝ այդպէս պարփա-

կուած՝ բարձրանում էր դէպի հարաւ, մինչև Գազբոյլ լեռնագօտու ստորոտը։

Սարալանջերի վրայ ցիր ու ցան երևում են օբաներ, շրջապատուած արածող հօտերով և նախիրներով, որոնց խառն են և ձիեր, էշեր ու ջորիներ։

Անցնում ենք մի հայ օբայի մօտով։ Տէրերը հազիւ են կարողանում ահագին դագանակներով յետ քշել մեզանից կատաղի գայլանման շներին։ Վրանների առաջ հայ կանայք զբաղուած են իրանց գործով. մի տեղ չորթան են շինում և արևի տակ շարոտում դրանց սպիտակ կոնիկները, մի այլ տեղ խնոցի են հարում, երրորդ տեղ օջախի վրայ կաթ են տաքացնում... Ահա մի պառաւ կին խնամք է ցոյց տալիս նոր լոյս աշխարհ եկած գոմշի ձագին. Նրա շուրջը ցատկոտում են և վազվզում՝ հորթուկների, գառնուկների և շան լակոտների հետ խառնիխուռն՝ բոկոտն և կիսամերկ մանուկներ։

Բնութեան ծոցում, այդ մաքուր ու զով օդում, ճոխ արօտատեղիներում, անուշ ու սառնորակ ջրերի ափերին անասուններն էլ են իրանց գոհ ու զուարթ զգում։ Տեսէք, ինչպէ՜ս փայլում են նրանց մորթի-

ները. կարծես իւղով օծուած լինին տնաշէնները...

Հասանք վերջապէս և ձիւնի շերտերին։ Այստեղ կարելի է տեսնել գետերի և ամպերի գոյացումը։ Սառած ձիւնի հաստ խաւերը արեգակի ճառագայթների տաքութիւնից կամաց-կամաց գոլորշանում են և մշուշի նման վեր բարձրանում, վեր սողում, կուտակւում իբրև ամպեր լեռների գագաթների շուրջը և սպասում օդային հոսանքներին՝ հեռու երկրներ չուելու համար։ Իսկ ձիւնի հալուած, պոկուած կաթիլները սառցային կամարի տակ կենդանանում, միանում են իրար հետ. կաթիլների զատ-զատ ծլնկոցը վտակների մեղմ կարկաչիւն է դառնում։ Այդ վտակները ցատկոտելով քարերի վրայով, խփուելով ժայռերի անշարժութեան, զայրանում են, փրփրում, և յասումի է փոխւում դրանց անուշ կարկաչիւնը. իսկ երբ բոլոր վտակների ալիքները միախառնւում են ու գետ կազմում՝ արդէն առնական կոծով արտայայտող մռնչիւն է լսւում. զգում էք միլիոնաւոր մանր ոյժերից գոյացած մի զօրութիւն, որը կարող է և շինել և կործանել, նայած ուղղութեան և հանգամանքներին...

*Սարալանջի ամենավերին մասերում ծխում էին Թուրք օբաներ։ Մի ժայռի գլխին խաղում էին Թուրք երեխաներ, որոնք մեզ նկատելով պարտք համարեցին գէթ միքանի խօսքերով էլ է հայհոյել հեռուից։*

*Միքանի պտոյտ էլ և արահետը մեզ հասցրեց Գազբոյլի Թամբաձև ողնին։ Մեր յետևում մնացին Իշխլուն և Սաղսաղանը, իսկ մեր առջև՝ հին Չորք կամ Կապան գաւառն է, որ մի ժամանակ ծառայում էր Սիւնեաց հզօր նախարարների համար իբրև անառիկ միջնաբերդ։*

*
* *

*Անընդհատ, նեղ, խճճուած ձորերի և բարձրաբերձ, խիտառխիտ կանգնած լեռների մի աշխարհ էր այդ, որ հէնց առաջի հայեացքից իր աւելի դաժան ու խրոխտ արտաքինով տարբերւում էր հարևան գաւառից։ Բիզ-բիզ կանգնած հսկայ լեռների ամբոխի մէջ բարձրագլուխ դէպի երկինք էր ցցուած բոլորի յետևում մի ձիւնապատ, սրածայր գագաթ։*

*—Ի՞նչպէս է այն սարի անունը, հարց-*

նում եմ ինձ ուղեկցող ձիապանից և ջորեպանից։

—Ի՞ն, սար ա էլի…

—Անունը։

—Չգիտենք, աղա։

—Ի՞նչպէս թէ չգիտէք. առաջին անգամն էք տեսնում…

—Աղա, բաշխիր… մենք էլ առաջին անգամն ա, որ Քըջարանց ընք քընում…

—Լաւ, բայց ինչո՞ւ վարձուելիս ինձ ասել էիք թէ ծանօթ է ձեզ ճանապարհը…

—Իմ հէրս միքանի անգամ անցել ա էդ ճամբով, ինձ էլ ասել ա թէ ինչպէս պէտմա քընալ, պատասխանեց ձիապանս։

—Հէր օրհնածներ, դրա՞ համար էք ինձնից հինգ անգամ աւելի վարձ պահանջել, քան մի սրևէ ակցիզնուց… Ուրեմն, ինձ խաբե՞լ էք, ասելով թէ ճանապարհը գիտէք…

—Դէ՛, բաշխիր, աղա, չենք գիտացալ որ սարի, գետի, ձորի անուններ ըս մեզնից հարցնելու։ Դէ ճամբան էլ դուզ ճամբայ ա…

Ի՞նչ պէտք էր անել։ Մի քարի գլխին թիկն էր տուել մի թուրք հովիւ.

նրան դիմեցի ցոյց տալով ինձ հետաքրքրքրող սարը։

—Խուստուփ, եղաւ նրա պատասխանը։

Այդ գագաթը պատկանում է այն լեռնագօտուն, որ հարաւից անջրպետում է Ձորք գաւառը Արևիքից կամ Մեղրու կողմերից։ Ուրեմն, ես գտնւում էի Ձորք գաւառի հիւսիսային սահմանագծի՝ Գազբոյլ լեռների վրայ, որտեղից տեսնում էի հակառակ անջրպետի ամենաբարձր կէտը։ Այդ տարածութիւնը ուղիղ գծով. երևի, 20 վերստ լինի։ Եւ այդ համեմատաբար չընչին տարածութեան վրայ կուտակուած են որքա՜ն ձորեր, լեռնապարեր, սրածայր գագաթներ, անդունդներ, խոխոմներ. լեռնային վիթխարի կնճիռների մի զարմանալի լաբիւրինթոս ու քաօս!.. Այդ դաւառում մի ժամանակ աւելի մեծ թւով բերդեր կային, քան եկեղեցիներ։ Այդ գաւառում, մինչև Դաւիթ բէգը դեռ չէր մարել ազատութեան ոգին՝ միշտ թագնուած մնալով, ինչպէս մոխրի տակ ծածկուած կրակ…

Դա Սիւնեաց իշխան Վասակի «ամուր գաւառներից» մէկն է։ Նախքան մտնենք այդ երկիրը՝ մի բարոյական պարտքը համարենք—15 դար շարունակ Վասակ «Ուրա-

ցողի» հասցէին լսուող անէծք ու հայհոյանքի փոխարէն ունկն դնել և մի անաչառ ձայն, որ բարձրացրեց՝ մեր պատմութիւնը առաջին անգամ լուրջ քննական ոգուով ուսումնասիրող Գարագաշեանը։ Նրա հռչակաւոր «Քննական Պատմութեան» մէջ երևան են գալիս թէ Վասակի խրոխտ և քաջ նախնիները իրանց կորովի անհատականութեամբ և թէ ինքը դժբախտ Վասակը — կղերական կուսակցութեան միակողմանիութեան այդ զոհը, իբրև զրպարտուած և չհասկացուած մի խոշոր պատմական դէմք։ Թող ներուի մեզ, եթէ քաղուածօրղն առաջ բերենք այստեղ միքանի կտորներ Գարադաշեանի յիշած գրքից։

«Սուտ է և զրպարտութիւն, ինչպէս յայտնի է յընթացից և ի գործոց Վասակայ, ըստ վաւերականագոյն պատմութեան Փարպեցւոյն, թէ այս «խորհրդական, հանճարեղ և յառաջխմաց անձն»—(Կորիւնի խօսքերով)—էր հակառակ քրիստոնէութեան և թշնամի ազգին, ինչպէս բամբասուած է յանիրաւի։ Դարձեալ, եթէ Վասակ վաղուց էր ուրացեալ և գաղտ ի բանի ընդ Յազկերտի, միթէ կը խռովէր ընդ մեկնել Վարդանայ իւրովքն երթալ ի Յոյնս, և կը դարձունէր զնա յետս նամականւով և դեսպաններով. ոչ ապաքէն կ'ուրախանար մանաւանդ, ինչպէս նա և կուսակիցք նորա, որ այնպիսի նշանաւոր անձ

մը, որպիսի է Վարդան, պակսեցաւ հանդերձ ի-րովքն ապստամբութեան (ուխտապահաց) խումբէն։ Այնչափ խռովեալն և յուզեալ Վասակայ և իւրոցն՝ կը ցուցնէ, թէ չէին նոքա միաբան յուրացութիւն, ուստի և զատչելն նոցա յետոյ ի Վարդանեանց, ունէր այլ պատճառ, ինչպէս պիտի տեսնենք յետոյ, Անհնար էր Հայոց ընդունել կրակապաշտութիւնն ազգովին, իսկ զինուք ընդդիմանալ Յազկերտի՝ էր վտանգաւոր. ուստի լաւագոյն հնարքն էր՝ թողուլ մոգուց կատարել զիւրեանց պաշտօնն, այն է քարոզել մոգութիւնն ի Հայս, հաստատել կրակի պաշտօնը՝ շինելով ատրուշաններ։ Անտարակոյս, մոգքն արհամարհուելով ժողովուրդէն՝ կամ յուսահատեալ պիտի մեկնէին, և կամ գործը պիտի չգտնէր յաջողութիւն։ Եւ եղաւ իսկ այնպէս, ինչպէս կը վկայէ Փարպեցին»... «Կղերին պարտքն էր փոխանակ գաւառ գաւառ շրջելով յապստամբութիւն գրգռելոյ ժողովուրդը՝ վառել զնոսա հոգևորապէս ընդդէմ մօտալուտ վտանգին։ Իսկ նախարարք, յետ զիջանելոյ կամաց թագաւորին—տալոյ մուտ մոգուց իւրաքանչիւր յերկիր իւր՝ կրնային հաստատուն մնալ յուխտին իւրեանց յԱւետարանն, ինչպէս արարին իսկ»։

Կղերական կուսակցութեան դրդմամբ Վարդանը և նրա կողմնակիցները որոշում են ապստամբել։ Եւ տեսնելով թէ ապստամբելու խորհուրդը բացւում է և մեծ վնաս պիտի հասնէր դանդաղելուց «առնելով ժողով եպիսկոպոսաց և նախարարաց՝ որոշեց (Վարդան) յայտնել

զիրսն Մարզպանին Վասակայ, որ տակաւին չէր գիտեր։ Ապա յանկարծ մտնելով նա և ընկերք նորա բազմութեամբ առ Վասակ՝ յայտնեցին նմա խորհուրդը և կը ստիպէին զնա միաբանել ընդ նոսա. Վասակ, որպէս ասէ Փարպեցին՝ ցուցուց դանդաղութիւն։ Յիրաւի կը դանդաղէր Վասակ, նախ՝ վասն զի իբրև Մարզպան (փոխարքայ) ինքն կը կրէր պատասխանատուութեան բոլոր ծանրութիւնը, և ունէր երկիւղ իւր որդւոց համար (պատանդ էին պարսից Թագաւորի մօտ). երկրորդ՝ հաւանական է թէ անխորհուրդ եռանդեան արդիւնք կը գտնէր գործը, ինչպէս կը վկայէ ինքն իսկ Փարպեցին, թէ Վարդան ոչ այնչափ յաղթութեան յուսով, որչափ մարտիրոսութեան փափաքով մղուած էր յայն խորհուրդ *)... «Զանք Վասակայ և իւրոցն օգտեցին գրեթէ ոչինչ։ Մարտիրոսական տենչը զօրաւոր էր ուխտապահ կոչուած մասին մէջ, մանաւանդ որ կղերին մեծ և երևելի մասն էր քաջալերիչ և խրատատու։ Ուստի Յազկերտ որոշեց զինու զօրութեամբ նուաճել զապստամբութիւնն»։ Հայերը պարտութիւն կրեցին. քիչ զօրք հաւաքուեց, զօրքի մի մասն էլ ակամայ էր եկած կռիւ և փախուստ դարձաւ...

«Մեծ յարգութեամբ հանդերձ, զոր ունինք առ Վարդանեանս, իբրև արդարև վկայս՝ պարտիմք խոստովանել, թէ չէր բնաւ իմաստութիւն միով մասամբ միայն ազգին, ամենևին զուրկ ար-

*) Ընդգծումները և փակագծի մէջ խօսքերն մերն են։

տաքին օգնութենէ՝ խիզախել Սասանեան պէս խրոխտ զօրութեան դէմ, զոր հռովմէական պետութիւնն անգամ չիշխեց գրգռել։ Սոյն այս կէտն է որ կ'արդարացնէ հակառակ կողմը։ Եթէ Վասակ, որ արդէն հակառակ էր ապստամբութեան խորհրդոյն, տեսնելով ևս Յունաց և գրեթէ բոլոր քրիստոնեայ աշխարհին հրաժարելն օգնելէ Հայոց և իբրև ապստամբութիւն՝ աղարտելն Հայոց շարժումը, բաժնուեցաւ երևելի մասով մը միաբանութենէն, ինչպէս կըցուցնէ Փարպեցին, այս դիպաց հաւատարմագոյն պատմիչը՝ չէր ամենևին դատապարտելի. մանաւանդ որ Վասակ ամեն ջան ի գործ դրաւ, իբրև միջնորդ ի կողմանէ Թագաւորին՝ յետս կացուցանել զազգն ապստամբութենէն, թէպէտ ամեն ջան Վասակայ մեկնուեցաւ իբրև խաբէութիւն։ Եթէ ընդունինք, թէ Վարդան, իբրև նախանձաւոր քրիստոնեայ, ունէր պատճառ ընտրելու անյոյս պատերազմ մը, տեսնելով հաւատոյ աչօք մարտիրոսութեան պսակ՝ պարտինք ընդունել, թէ Վասակ, իբրև իմաստուն քաղաքագէտ՝ ունէր գոնէ նոյնչափ պատճառ ջանալու խափանել այն պատերազմն, իբրև յանդուգն ձեռնարկութիւն։ Կուսակցութեան կամ չափազանց եռանդեան ոգւով գրուած պատմութեան բոլոր վճիռները կ'ունայնանան խոհեմութեան կանոնին առջև։ Հալածանաց դէմ բարոյական զէնքն է օրինաւոր. բայց երբ հարկը կը ստիպէ բռնութիւնը բռնութեամբ վանել՝ խոհեմութեան կանոնը կը մտնէ մէջ։—Ո՞ր Թագաւոր երթեալ տայցէ պա-

*տերազմ ընդ այլում Թագաւորի, և ոչ նստեալ նախ խորհիցի, եթէ կարո՞ղ իցէ տասն հազարաւ զդէմ ունել զայնորիկ, որ գայցէ ի վերայ նորա քսան հազարաւ. ապա թէ ոչ՝ մինչդեռ հեռագոյն իցէ, հրեշտակութիւն առաքեալ աղաչեսցէ ի խաղաղութիւն (Ղուկ. ժդ. 32)։—Մեր գանգատը չէ այն դիւցազն խմբին դէմ, որ իբրև բոյլ մի՝ համարուած է և պիտի համարուի միշտ հայ երկնին զարդ, այլ է այն միականիներուն դէմ, որ մի կողման եռանդը դիտելով մանր՝ չեն նայիր անգամ միւսոյ կողման իմաստութեան։ Վարդանանց պատմութիւնն է ըստ մեզ երկու կուսակցութեանց պատմութիւն. մին հոգևոր, աստուածային, որ զերկնաւորն միայն ունի ինքեան նըպատակ, միւսն՝ մարմնաւոր և աշխարհական, որ ըստ մարդկային մթնոլորտն անդր չանցնիր։ Որովհետև ազգին վստահութիւնը գրաւող երկու պատմիչք, Փարպեցին և Եղիշէն, մանաւանդ վերջինն, ի բարձրացուցանելն զմին, զմիւսն կ'իջեցունեն չարաչար՝ անիրաւ դատում մը տիրած է յազգին ընդդէմ Վասակայ» *)։*

Սինեաց տէր Վասակը, պարսից արքայից արքայի այդ փոխանորդը բովանդակ Մեծ Հայաստանում, ս. Մեսրոպի աշակերտ Կորիւնի վկայութեամբ՝ «էր այր խորհրդական և հանճարեղ և յառաջիմաց, շնորհատուր իմաստութեան Աստուծոյ»։ Նա

*) Գարագաշեան «Քնն. պատմ.», մասն դ. եր. 132—134 և 142—143։

պատկանում էր ուժեղ անհատականութիւններով հռչակուած մի նախարարական տան, որ IV—V-րդ դարում ամենամեծ ազդեցութիւնն ու դիրքն ունէր Հայաստանում։ Նրա հաւր կամ պապի հայր քաջ Վաղինակը ամուսնացել էր Աղձնեաց (Սասունի կողմերի) ապստամբ բդեշխ Բակուրի դստեր հետ և, երևի, Սասունի լեռներից վերցրած իր գեղեցկուհու ծննդավայրը պատուելու նպատակով՝ Անդովկ *) անունն էր տուել իր անդրանիկ զաւակին... Եւ այդ Անդովկը իր սէգ, խրոխտ և խիզախ բնաւորութեամբ Սասունի ծմակներում մեծացած մի առիւծ էր, որի հարուածների կսկիծը չէր մոռանում արքայից արքայ Շապուհը։ Պարսից մայրաքաղաք Տիզբոնը աւերող Անդովկին անկարող եղաւ Շապուհը նուաճել պաշարելով նրան անառիկ Բաղաբերդում... Անդովկը Մամիկոնեանների փեսան էր, ինչպէս և Արշաւիր Կամսարականը։ Սիւնեաց և Մամիկոնեան հզօր նախարարներից ծընուեց Վասակի հայր Բաբիկը, որ իր քաջութեան և հոների վրայ տարած բազմաթիւ յաղթութիւնների շնորհիւ կարողա-

---

*) Սասունի գագաթներից մէկի անունը՝

ցաւ ամոքել Ճապուհի վրէժխնդրութիւնը իրանց ցեղի վրայից։ Բաբիկի քոյրը (Վասակի հօրաքոյրը) էր իր գեղեցկութեամբ և կամքի ոյժով հռչակուած Փառանձեմը, որ եղաւ հայոց դժբախտ Արշակ Թագաւորի կինը։ Անյուշ բերդում կաշկանդուած Թագաւորի ամուսին Փառանձեմը 13 ամիս Արտագերս *) բերդում պաշտպանուեց պարսից դէմ։ Այդ Փառանձեմի զաւակն էր երիտասարդ Պապ Թագաւորը, որ ձգտում էր ոչնչացնել Հայաստանում հրով և սրով անճած կղերական ֆէօդալիզմը, սակայն խեղացի վերանորոգիչը ոչ միայն սոտր զրպարտութիւնների ենթարկուեց կղերի կողմից, այլև սպանուեց այդ կուսակցութեան օժանդակութեամբ... Վասակի քոյրը Հայաստանի յունական բաժնի (Փոքր Հայք) Թագաւոր Արշակ Գ-ի կինն էր, իսկ Վասակի Դարա անունով եղբայրը այդ Թագաւորի զօրքերի սպարապետը։ Վասակի երկու որդիներին (Արտներսեհ և Բաբիկ) պարսից արքունիքում պահում էին իբրև պատանդ։ Վասակի դուստրը մարդու էր գնացել Վարազվաղանին, որ իր աներոջ

*) Կաղզւանի մօտ այժմ Քերս անունով գիւղը։

դէմ քսուԹեամբ գործող մի սրիկայ դուրս եկաւ. այդ Վարազվաղանը պարսից արքունիքում աշխատում էր սևացնել Վասակին, որպէսզի վայր գլորելով անհրոջ տիրանայ Սիւնեաց իշխանուԹեան։

Այդ բոլոր մանրամասնուԹիւնները ցոյց են տալիս որ Սիւնեաց նախարարական ընտանիքը հզօր անհատականուԹիւններից կազմուած մի նշանաւոր ցեղ էր, առիւծների զարմ... Եւ զարմանալի չէ, եԹէ ճիշդ է Թէ Վասակը ձգտում էր Հայոց աշխարհի Թագաւորական պսակով զարդարել իր գլուխը. Նրա պատուին, հարստուԹեան, ոյժին և դիրքին, ինչպէս և Նրա «խորհրդական, հանճարեղ, յառաջիմաց և իմաստուն» ճակատին նոյնքան կը սազէր այդ պսակը, որքան սազում էր «մարտիրոսական պսակը» Վարդանին...

*
* *

Գազբոյլի լեռնագօտուց սկսեցինք իջնել մի խոր և նեղ ձորի լանջի արահետով։ Մեր շուրջը բուսականուԹիւնը արդէն չունէր այն ճոխուԹիւնը, որ մենք Թողինք սարի հիւսիսային կողմում։ Սարալանջերի

վերևի մասերում այսուայն կողմում Թուրք օբաներ էին երևում։

Ձորի յատակը չհասած, մի աղբիւրակի մօտ իջանք հանգստանալու։ Ժայռերի տակից լսւում էր կաքաւների կղկղոցն, որ այդ անդնդախոր ձորերի ճնշող լռութեան մէջ առանձին ախորժանքով էր հնչում։ Խճճուած խոր ձորեր, վիհեր, դիք-դիք լեռներ պատած ցանցառ անտառներով, դարերով մթնոլորտային գործօնների ազդեցութիւնից աւերուած ժայռեր, հող ու խիճով ծածկուած զառիվայրեր — և ոչ մի շինութիւն մեր շուրջ։ Սոսկում էր զգում մարդ այդ խոր, ամայի և լուռ ձորերի աշխարհում...

Երբ իջանք ձորի յատակը այնտեղ տեսանք մի գետակ։ Էլ աւելորդ էր հարցնել ուղեկիցներիցս թէ ինչ գետակ է այդ, որովհետև, ինչպէս տեսանք, նրանք էլ առաջին անգամն էին այս կողմերում։

Այդտեղ ճանապարհը երկուսի էր բաժանւում, մէկը գետի ափով ուղիղ դէպի հարաւ էր ընթանում, իսկ միւսը դարիվեր բարձրանում էր դէպի աջ։

—Հայրդ ասել է թէ որ ճանապարհն

ընտրենք, հարցրի հեգնությամբ ձիապանից։

—Աղա, հրէն մի ծառի տակին մի թուրք է նստած, քընամ նրան հարցնեմ, պատասխանեց նրա փոխարէն ջորեպանը։

—Չմոռանաս գետակի անունը հարցնելու, ասացի նրան։

Թուրքը խորհուրդ էր տուել դարիվեր շաւղով շարունակել մեր ճանապարհը։ Մենք այդպէս էլ արինք։

—Բաս գետի անո՞ւնը։

—Աղա, գետ ա էլի. իրա համար քընում ա... Հարցրի, ամա լաւ չլսեցի. Գիրաթաղ-չայ ա, ինչ ա...

Ինձ զարմացնում էր այն, որ՝ այդ մարդիկ էլ առաջին անգամ լինելով այդ կողմերում՝ նոյնքան էին հետաքրքրւում շրջակայքով, որքան դրանց անասունները...

Ջորեպանս հեծաւ իր վիթխարի ջորին, որի բեռը կէս պուդ էլ չէր լինի, և վեր սլացաւ, յայտնելով որ ճանապարհը դէպի Քաջարանց հէնց այն է, որ կայ։ Բարձրացանք և իջանք մի այլ ձոր։ Դարձեալ մի գետակ, որ դէպի հարաւ էր հոսում։

—Հայրդ բա՞ն չի ասել այդ մասին,

հարցրի քմծիծաղով ձիապանից, որ ոտքով էր քայլում մեր յետևից։ Պատասխանի փոխարէն աչքերը գետին գցեց տղան, իսկ նրա ընկերը, բազմած ջորու վրայ, անձնավստահութեամբ համոզում էր մեզ՝ հետևել իրան վերևի արահետով։

—Աղա, հիմա ես լաւ գիտամ, էսպէս ա, էսպէս, քշիր...

Մի քիչ միճելուց յետոյ, թէև տատանուելով, բայց հնազանդուեցի. և կոյրը կոյրին պէտք է առաջնորդէր...

Արահետը անընդհատ վեր է բարձրանում և ստանում արևմտա-հիւսիսային ուղղութիւն։

—Տօ, ո՞ւր ես տանում մեզ, հարցրեցի համբերութիւնս հատած։

—Աղա, եկէք, եկէք, էսպէս ա։

—Ի՞նչպէս թէ էղպէս է, դու յետ-յետ ես գնում, հեռանում ես, նկատեցի իրան։

Նա կանգնեց շուարած և կոտրուած իջաւ ջորուց, քորեց վզակոթը և ասաց.

—Դէ էս չեղաւ, աղա՛, բաշխիր։ Պէտք ա յետ քընանք։ Էս փիս տեռաւ... շատ փիս պեան տեռաւ...

Ձորի ներքևում ծառերի արանքով հազիւ նշմարւում էր միւս կածանը։ Իջայ

ձիուց և, չուզենալով յետ գնալ եկած ճանապարհով, սարալանջի զառիվայրով ուղղակի դիմեցինք ներքև։ Իմ առաջնորդներս սաստիկ խղճահարւում էին և ամօթից էլ ձէն չէին հանում...

Ես յիշում էի որ մենք պէտք է իջնենք Գեղուայ գետի հովիտը, որ Գազբոյլի լեռնագօտուն զուգընթաց ուղղութիւն ունի արևելքից-արևմուտք։ Դէպ հարաւ հոսող մեր տեսած երկու գետակները Գեղուայ գետի օժանդակները պէտք է լինէին։ Գիտէի որ Քաջարանց գտնւում է Օխչու գետի ափին, որ Գեղուայ գետից հարաւ է գտընւում և հոսում է սկզբում սրան զուգընթաց և ապա միայն, Բաղաց աշխարհը մտնելուց առաջ, միանում է սրա հետ և իբրև մի գետ առաջ գնում, կրելով Կապանի կամ Չաւնդուր գետ անունը մինչև Արաքս թափուիլը։ Պէտք էր, ուրեմն, հարաւային ուղղութեամբ գնալ մինչև որ դուրս գանք Գեղուայ գետի հովիտը։

Իջնել ներքև դիք, քարքարոտ, փշերով ու մացառներով ծածկուած սարալանջով բաւական անախորժ զբօսանք էր, և ես՝ մինչև որ ձորի ստորոտում հոսող գետակի ափն հասայ՝ հալից ընկել էի ար-

դէն։ Մեր ոտերի տակից, խոտերի միջից դուրս էին թռչում մայր կաքաւներ, անպաշտպան թողնելով սիրուն ձագուկները մեր ձեռքում…

Գետակը հոսում էր նեղ ապառաժոտ ձորում։ Ծառերի ստուերի տակ մի քիչ հանգստացանք. սառը ջրի մէջ երես ու գլուխ լուացինք, զովացանք և առաջ գնացինք մի արահետով, որ քայլողից եթէ ոչ սատանի, գէթ այծի հնարագիտութիւն էր պահանջում… Տարաբախտաբար, քաղաքային նստակեաց կեանքը որտեղից կարող էր զարգացնել ոտների և շարժումների այդպիսի՛ ճարպիկութիւն. մնում էր չափազանց զգուշութիւններով քայլել նեղ շաւղով և ամեն րոպէ վախվխել՝ ներքև, գետակի մէջ, գլորուելուց…

Երկար ժամանակ գնում էինք անիծած ձորով. առանց հանդիպելու որևէ մարդու, թէև երևում էին կիսատ-պռատ մշակուած հողեր ձորալանջերի վրայ։

Մէկ էլ յանկարծ աննկատելի կերպով մենք մեզ տեսանք կանգնած կտուրների վրայ. քիչ էր մնում որ ձիս ընկնէր կտուրի փլուածքով ուղիղ խրճիթի մէջ… Մի կոյտ ողորմելի, իրար կպած, կիսագետնա-

փոր տնակների հարթ կտուրների վրայ մի քանի թուրքեր ինչոր բոյսից չուաններ էին գործում։ Նրանք, զարմանքից ապուշ կըտրած, մեզ վրայ այնպէս էին նայում, ինչպէս, երևի, ամերիկացի վայրենիները Կոլումբոսի վրայ…

—Էդ աղան ինչ բան ունի էս ձորերում, նա ո՞վ է, հարցնում էին նրանք կամացուկ իմ ջորեպանից։

—Ինժեներ է, եկել է հանքեր որոնելու, ասաց տաճկացին, չգիտեմ՝ հանաքո՞վ, թէ ինքն էլ հէնց այդպէս էր համոզուած…

Իջնելով այդ Ղարաբաշ կոչուած գիւղի զառիվայրից մեզ ծանօթ գետակի ձորը, միքանի քայլ արինք և դուրս եկանք Գեղուայ գետի սքանչելի հովիտը, որ ամբողջապէս դալարուոր հսկայ ընկուզենիների մի պուրակ էր ներկայացնում։ Գեղուայ յորդառատ, լայն գետը խրոխտ շառաչիւնով իր սրընթաց փրփրադէզ ալիքներն էր գլորում, հոսելով արևմտքից դէպի արևելք։ Հեռուում, որտեղից գետն էր դէպի մեզ թաւալում, ձորի երկու դալար ու դիք ցըցուած կողերից մէկը՝ մեր կողմինը՝ ծըռւում էր և մտնում հակառակ լեռների թիկունքը։ Երկու կողերի արանքում ծառերի

պուրակ էր փռուած և գետը կարծես ուղղակի նրա տակից լինէր ժայթքում։ Այդ լեռների վերևի մասում մի ճեղք էր բացուած, որից դէնը երևում էր վիթխարի ձիւնազգազմ լեռնագօտու մի փոքր կտոր միայն։

*
* *

Գեղուայ եզերքով ձգուած ճանապարհը այժմ աչքիս լայն խճուղու տպաւորութիւն էր թողնում։ Երթևեկութիւնը կենդանութիւն էր տալիս այդ հովտին. մենք հանդիպում էինք թուրք գիւղացիների՝ բեռնաբարձ ձիերով, ջորիներով և էշերով։ Պատահում էին թուրք երեխաներ և կանայք. այս վերջինները ինձ տեսնելիս իսկոյն շտապում էին չադրաներով ծածկել իրանց երեսները, թողնելով բաց իրանց մերկ սրունքները։ Գետի հակառակ ափին Մալլալը թուրք գիւղն էր։

Ջորեպանս դարձեալ բազմեց իր ջորու վրայ, և քշեց առաջ, բնաւ չմտածելով որ իր ընկերը ամբողջ ճանապարհը ոտքով է քայլել։

—Տօ, ինչ կը լինի որ թողնես ընկերդ

էլ մի քիչ նստի ջրերդ և հանգստանայ։ Ախր որ բեռս ծանր լինէր չէ՞ որ դու էլ պէտք է ընկերիդ պէս ոտքով քայլէիր...

—Լաւ ես ասում, աղա, մի քիչ էլ քընանք՝ կը թողնեմ որ նա էլ նստի,—ասաց նա, աշխատելով ամեն կերպ ջնջել մեր թափառումների պատճառած վատ տպաւորութիւնը։

Մենք արդէն հասել էինք այնտեղ, ուր Գեղուայ գետը թափւում է Օխչու գետի մէջ։ Այնտեղ ուր միանում են Զորքի այդ երկու գեղանի գետերը՝ գտնւում են հռչակաւոր Ջեվու բերդի աւերակները։ Դա այն Ջեվուն է, ուր Ասլամազ Ղուլի խանը իր զօրքերով անկարող եղաւ դիմադրել Դաւիթ բէգի նրկու քաջ համհարզների՝ Մխիթար Սպարապետի և Տէր-Աւետիքի՝ հնարագիտութեան և կատաղի գրոհի առաջ...

Երկու ջրերը միանալով կազմում են ահագին գետ, որ շարունակում է իր սրընթաց վազքը դէպի արեւելք, անցնում է Աչախու և Հալիձորի բերդերի արանքով և մտնում Բաղաց աշխարհը։

Դեռ չհասած երկու ջրերի միախառնման տեղը, մենք մտանք Գեղուայ գետը, որով-

հետև նրա վրայով կամուրջը քանդուել էր։ Ձիս լողիլող հասաւ միւս ափը։ Որքան և աշխատում էի ոտներս ասպանդակներից հանել և բարձր պահել ջրից, բայց և այնպէս այնքան խորն էր գետը, անգամ ամենածանծաղ մասում, որ ջրով լցուեցին կօշիկներս։

Անցնելով միւս ափ, մենք շրջեցինք այն լեռնագօտու ծայրով, որ ընկած է Գեղուայ և Օխչու գետերի մէջ ինչպէս անջրպետ և յայտնի է Փիրամզա անունով։ Այժմ մենք գտնւում էինք Օխչու գետի հովտում և նրա հոսանքի դիմաց դէպի արևմուտք էինք գընում։ Աջ ու ձախ կողմից դէպի հովիտն են բացւում խոր ձորակների անվերջ շարքեր։ Սարալանջերը՝ անտառապատ, բաց տեղերը՝ մշակուած արտեր, աւելի բարձրերում՝ արօտատեղիներ։

Անցնելով Քրդիկենց ու Հանդ գիւղերի մօտով և Օխչի Թուրք գիւղի միջով՝ մենք մինչև «ժամեր տալը» հասանք Քաջարաց հայկական գիւղը, որ աւելի ծանօտ է Գեջանան Թուրք յորջորջմամբ։ Նեղ, ծուռումուռ, զառիվեր, կեղտոտ փողոցներով հասանք գիւղական քահանայի երկյարկանի տնակի առաջ։ Իջնելով ձիուց ես

հազիւ էի կարողանում քայլել. այնքան յոգնել էի...

*
* *

Երիցակինը, նկատելով մեզ, իսկոյն սկսեց աւելել և կարգի բերել պատշգամբը։ Շուտով եկաւ և գիւղի քահանան՝ մի առոյգ թուխ-կարմիր տղամարդ։ Բարձրացանք պատշգամբը, որի սիւներից մեխած էին քարայծերի գլուխներ ահագին պոզերով, իսկ սիւների արանքում քաշուած թոկերից կախկխած էին ծամերի նման հիւսուած բանջարի ցողուններ։ Փոքրիկ բակը՝ առանց դարբասի, և միայն կիսատ-պռատ քարի պատերով էր բաժանուած փողոցից։ Բակին կից՝ գիւղական ժամը.— քառակուսի մի շինութիւն անտաշ քարերից, հողածածկ կտուրով։ Ծռուած, փայտէ ցածրիկ զանգատունն էր ցոյց տալիս, որ այդ շինութիւնը մարագ չէ, այլ եկեղեցի։ Այսօր նրա մի հատիկ փոքրիկ զանգակի ղօղանջիւնն էլ չլսուեց. քահանան զբաղուած էր։ Եկեղեցուց մինչև գետը կուչ են եկել խեղճ ու մեղճ տնակներ։

Այն բոլորը ինչոր մարդկային էր՝ աղ-

քատութեան և տգիտութեան դրօշմ էր կրում այդ հրաշալի և ճոխ բնութեան մէջ, որ կարող էր մրցել Զուիցերիայի ամենագեղեցիկ տեսարանների հետ։ Հէնց այդ կետը. ինչպիսի՜ գեղեցկութիւն և միաժամանակ ինչ ահագին էներգիա նրա անզուսպ ալիքների մէջ... Եւ այդ անբաւ ոյժը, ինչպէս և շրջապատող բնութեան գեղեցկութիւնը և հարստութիւնները՝ կորչում են մեր կեանքի դժբախտ հիւսուածքի շնորհիւ...

Այդ հայ գիւղը շրջապատուած է Փիրղուղան, Օխչի և Ճարաղին թրքաբնակ գիւղերով։ Քաջարանց գիւղում 70 ծուխ կամ մօտ 600 շունչ հայեր են ապրում։ Եւ այդքան մարդկանց տրուած է միմիայն 439 դեսեատին հող, որից 200-ը արօտատեղի։ Այդ պատառիկների մի մասն էլ դեռ ուզում են խլել հարևան թուրք գիշատիչները՝ բէգերը... Գաղափար կազմելու համար հողի այդ սակաւութեան մասին՝ բաւական է իմանալ որ նոյն Զանգեզուրի Բաղարչայ ռուսական գիւղի 65 ծուխին յատկացրուած է 3262 դեսեատին հող...

Բնականաբար քաջարանցցին աղքատ է, ուստի պանդխտութիւնը տնտեսական ան-

հրաժեշտութիւն է նրա համար. 4 եզ, նոյնքան կով, 50—60 ոչխար ունեցողը լաւ տուն է համարւում։ Աջող տարին այդպիսի տունը հազիւ այնքան գարի, ցորեն, չավդար և բակլա է ունենում որ իրան բաւականութիւն է տալիս։ Անաջող տարիներում 6 ամսուայ պաշարը պէտք է դրամով գնել։ Ի՞նչպէս ծայրը ծայրին հասցնեն աւելի չքաւորները, առանց դիմելու պանդխտութեան...

Սեպտ. 20-ից մինչև մայիսի 20 այդ հովիտը ձիւնի տակ թաղուած է։ Հաղորդակցութիւնը պահպանւում է միայն Բաղաց աշխարհի կամ Մադանի հետ։ Պոստային հաղորդակցութեան մասին խօսելն անգամ աւելորդ է... Դպրոցի երես չեն էլ տեսել. գիւղական տէրտէրի մօտ են քիչ-միչ կարդալ-գրել սովորում... Տխուր մտածմունքներով պաշարուած նայում էի շուրջս, մէկ էլ տեսնեմ փողոցում մի շիկամօրուս մուժիկ, յետքին արած մի թուրք, որի ուսով գցուած էր խուրջին՝ ինչ որ գործիքներով։ Հնարագէտ ռուսը ֆոնոգրաֆ էր ման ածում գիւղից գիւղ և քաղաքակրթութեան գէթ այդ բարիքի մասին կարող էին հասկացողութիւն կազմել ձորերում մոռացուած մարդիկ։ Ինձ համար մի սիւրպրիզ էր այդ «կուլտուրտրեգերի» ներկայութիւնը Քաջարանցի պէս տեղում...

*
* *

Գիշերը քնել պատշգամբում չէի կարողանում. Թաղիքների և գորգերի մէջ ապաստանուած լուերի լեգիօնները յարձակուել էին ինձ վրայ, ինչպէս մի թշնամի օտարականի վրայ։ Ես ստիպուած էի դիտել աստղազարդ երկինքը, լսել հզօր գետի անվերջ երգը մինչև լուսաբաց... Ժամի 6-ն էր, երբ մի քաջարանցցի ձիապանի և ջորեպանի հետ ճանապարհ ընկայ Օխչու գետի հոսանքով դէպի վեր, նպատակ ունենալով անցնել Գափուջղով Գողթան գաւառը։

Մարդ չէր կշտանում այդ յորդ գետի հմայող գեղեցկութիւնից։ Ամեն քայլափոխում նա ջրվէժներ է ներկայացնում. փրփրած, կապուտակ կոհակները գահավիժելով ներքև պտտում էին հունի զուգաւորութիւնների մէջ, յորձանք տալիս և կայտառ ղազանի նման դուրս ցատկում, զարնում գետաքարերին և խայտալով առաջ վազում խօլական կոռում կոչիւնով... Այդ գետը ուժ ու սիրտ տուող, խինդախութիւն ներշնչող մի ինչ որ զգայմունք էր զարթեցնում, կարծես կենսուրախ և ազատասէր երգ լինէր նա երգում...

—Աղա, հրէն Եաղլու-դարան. ուզո՞ւմ ես նրա վրայով բարձրանանք և ուղիղ դուրս գանք Ռամիս, Ցաղնայ գետի ձորը։ Էդ ճամբան աւելի դժուար ա, համա կարճ ա.—ասաց ջորեպանս։

—Ոչ, ես ուզում եմ բարձրանալ Գա-

փուջղով, որի բարձրութիւնը, դիտես, Փոքր Մասիսին հաւասար է…

Մեր դիմաց այն լեռնագօտու մի մասն էր երևում, որ սկսելով Սևանայ լճի հարաւային կողմից հասնում է մինչև Արաքսի ափը և բաժանում Սիւնիքը Արարատեան աշխարհից։ Մենք տեսնում էինք մեր դիմաց այդ լեռնագօտու այն մասը, որի այն կողմում Գողթան գաւառն է։ Այդ ձիւնապատ բարձրաբերձ լեռների գլխին կան մեծ ու փոքր լճեր, որոնց մօտ գնալու համար պէտք էր գիշերելու առանձին նախապատրաստութիւններ, որ ես չունէի։ Այդ լեռներից է սկսում և դէպի արևելք ձգւում՝ Օխչու գետի հարաւային եզերքով մինչև Խուստուփը՝ լեռների այն անջրպետը, որ բաժանում է Ձորք կամ Կապան գաւառը Մեղրիի մահալից կամ հին Արևիք գաւառից։

Այդպէս ուրեմն, մեր առջև Գողթնի լեռնագօտին էր իր Գափուջղ գագաթով, աջ՝ Փիրամդայի լեռներն էին, ձախ՝ Խուստուփի լեռնաշարքը։ Այդ կերպ երեք կողմից սանդղակատար սարերով պարփակուած լեռնադաշտի այս ու այն կողմում երևում էին օբաներ, հօտեր, նախիրներ։

Այդ դաշտի խոլորաբոյր տեղերը սառած ձիւնի ահագին շերտերով էին ծածկուած։ Մենք քայլում էինք այդ սառցաբանների վրայով, որ այնքան ամուր էին,

որ չէին կոտրում մեր կենդանիների ոտքերի տակ։

—Աղա, տեսնո՞ւմ ես, հրէն հեռու, սարի գլխին, ձիւնի վրայ սև-սև կէտեր. քարայծերի սուրուներ (հօտեր) են,—ասաց ջորեպանս ձեռքով ցոյց տալով դէպ Գափուջղի ձիւնապատ կատարները։

Միշտ որ արեգակի տակ փայլող ձիւնի վրայ նշմարում էին սև շարժուն կէտեր։ Քարայծերը չափազանց ճարպիկ են և զգոյշ. նրանց բոյլերը միայն վաղ առշալոյսին են իջնում ներքև արածելու։ Հէնց որ արևը մի քիչ բարձրանում է՝ նրանք քաշւում են վերև ու անառիկ դիրքեր բռնում լեռնաշղթայի վերին մասերում, ուր նրանք աւելի ապահով են որսորդների գընդակներից,

Ժամի $8^1/_2$-ն էր, երբ մենք սկսեցինք վեր բարձրանալ՝ Գողթնը Կապանից բաժանող այդ տիտանեան անջրպետի վրայ։ Դիք, ոլոր-մոլոր, քարքարոտ, նեղ արահետը միայն սակաւ երթևեկութեան հետքեր էր կրում։ Ձմեռը, երբ ամբողջ այդ դարիվերն ծածկուած է ձիւնով՝ ճանապարհորդները կապում են իրանց անասունների չորս ոտքերը և սահում նրանց հետ մինչև ներքև։

Վերելքի մեծ մասը հետիոտս անցայ։ Սրտի բաբախումը և շնչասպառութիւնը ստիպում էին յաճախ կանգ առնել հանգըստանալու համար։

- Ժայռերի վրայ նստած յետ էի նայում դէպի Օխչիի ձորը, որ արդէն լքցուած էր մշուշով։ Հիւսիսից դեռ երևում էր Խուստուփը իր վեղարանման գագաթով։

Միքանի ջանքեր ևս — և մենք հասանք Գափուջղի մէջքը…

Մեր առջև էր փռուած Մայր-Արաքսի ընդարձակ հովիտը։ Գետի միւս կողմի ափերն էլ էին երևում։ Հեռու հորիզոնում՝ դարձեալ լեռների շարք Քամքու գագաթով, որի վրայ դեռ երևում էին ձիւնի բծեր։ Դէպի Արաքսը իջնում էին թէ Գողթնի թէ Պարսկա-Հայաստանի բազմաթիւ ձորերն ու ձորակները։

Բայց ինչ ահագին տարբերութիւն լեռնագօտու այս և այն կողմերի մէջ։ Արաքսի հովիտը խանձուած անապատի տրպաւորութիւն է թողնում Սիւնեաց աշխարհի համեմատութեամբ։ Դէպի Արաքսը իջնող ձորերի յատակները միայն՝ օազիսի նման կանաչին էին տալիս, իսկ շուրջը— անապատ։ Եւ այնտեղ ուր մարդկային քրտինք չի թափւում, արուեստական ոռոգում չկայ—ամայութիւն, քայքայում…

Դէպի Արաքսի հովիտը նայող սարերի լանջերը կարծես մաշկը քերթած վիթխարի մարմիններ լինեն՝ վիրաւոր, գզգզուած, աւերուած։ Բուսական խաւից զուրկ այդ լանջերը՝ մթնոլորտային ազդակների ներգործութեան ենթարկուած՝ քայքայւում են

և աւազի, հողի ու քարերի փլիրուն, անկայուն շեղջերի վերածւում։ Բուսականութիւնը՝ ցանցառ ու խղճուկ, իսկ ժայռերի ծերպերում թաքնուած սառցաքարանները նուազած...

Բաւական է յորդ անձրև կամ սաստիկ կարկուտ՝ որ հողի, աւազի, խիճի և ժայռերի կտորները, խառնուելով դէպի ներքև գլորուող ջրի հոսանքի հետ, ցեխի թանձր լաւա կազմեն և դառնան Գողթնի պատուհաս սելաւներ։

Հին ժամանակներում, երևի, անտառներով էին ծածկուած այդ լանջերը։ Ծառերը իրանց ատուերներով աւելի երկար էին պահպանում գետնի խոնաւութիւնը. բնականաբար, խոտերի աճմունքն էլ աւելի ճոխ էր և, հետևաբար, սարերի մակերևոյթը զրկուած չէր դալար զօրգանման մարգից։ Ուրեմն, այն քայքայումն ու աւերումը, որին ականատես ենք մենք այժմ, հազիւ թէ տեսած լինէին «ղեղեցիկ և գինէտ Գողթնի» գուսանները... Սակայն դարերի ընթացքում շատ արհաւիրքներ, մոնղոլական վայրագութեան ու անգթութեան չափազանց շատ հարուածներ կրեց Հայաստանի եւ այդ մասը, ուստի զարմանալի չէ, եթէ փոխուեցին թէ մարդիկ և թէ բնութիւնը Գողթան գաւառում...



